# CLASSICAL ARMENIAN BIBLE: THE ZOHRAB BIBLE

Edited by Dr H. Zohrabian



## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ
## ՄԱՏԵԱՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ԸՍՏ
ՃՇԳՐԻՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ
ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ
’Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆՆ ՀԱՒԱՏԱՐՄԱԳՈՅՆ ԲՆԱԳՐԷ
’Ի ՀԱՅԿԱԿԱՆՍ ԲԱՐԲԱՌ։

*Նորոգապէս ’ի լոյս ընծայեալ*
*յընտրելագոյն գրչագիր գաղափարէ՝*
*Համեմատութեամբ այլևայլ օրինակաց,*
*Հանդերձ կարևոր ծանօթութեամբք բնաբանին։*

Յաշխատասիրութենէ տեառն
Հ. Յովհաննու Զօհրապեան Վարդապետի,
’ի միաբանութենէ Մեծին Մխիթարայ
Բաբունապետի և առաջին Աբբայի։



*Տպագրեալ Հրամանաւ Տ.Տ. Ստեփաննոսի Ագոնց*
*Աստուածապատիւ Արհիեպիսկոպոսի,*
*և Առաջնորդի Ուխտին՝ Սրբոյն Ղազարու։*



1805 ’Ի ՎԵՆԷՏԻԿ. ՌՄԾԴ
’Ի Գործարանի Սրբոյն Ղազարու։

## THE BIBLE
## OLD AND NEW TESTAMENTS

ACCORDING
TO THE ACCURATE TRANSLATION
OF OUR ANCESTORS
FROM THE MOST RELIABLE GREEK TEXT
INTO THE ARMENIAN LANGUAGE.

Newly published from the best manuscript,
with a comparison of various exemplars,
with important annotations to the text.

*On the basis of the work of*
*Rev. Doctor Fr. Hovhann Zohrabian,*
*of the Congregation of the Great Mechitar,*
*Pontif and first Abbot.*

Published by order of the Very Rev. Stepannosi Agonts,
Honoured Venerable Bishop
and Prelate of the Congregation of St. Lazarus.



1805 VENICE
At the Press of St. Lazarus.

Revised edition edited by Tigran A. Aivazian (Erevan, 2016)

զի և առ մահուամբն Շմաւոնի ասէ զԵրկրորդ Մակաբայեցւոցն իրս կատարել. և յայտ է 'ի գրոց աստի, զի Առաջինն և ո՛չ Երկրորդ Մակաբայեցին հաստացանէ զպատմութիւնս մինչև ցՇմաւոն, կալցի՛ զայս ոք որպէս և ախորժէ կամ գրչին սխալել, կամ կարգի գրոցս փոփոխել: Բայց թէ ո՞ ոք գրեաց զպատմութիւնս զայս, և կամ զի՞նչ պատճառաւ, թէպէտ և զվերասացեալ միջոցս ժամանակին ո՛չ նշանակէն ինչ գիրք Հրէից` յետ Նեեմեայ, բա՛ց յԵսթերայ իրացն. այլ զայս վասն մեծ վշտացն զոր կրեցին Հրեայք վասն աստուածպաշտութեան յԱնտիոքեանց. և վասն մե՛ծ քաջութեանն Մակաբեանց, և մեծագոյն առ նոսա Աստուծոյ խնամոցն` գրեցին մեծաւ զգուշութեամբ. մանաւանդ 'ի հաւատարմութիւն մարգարէութեանն Դանիելի, որ նշանակեաց զանցս ժամանակին այնորիկ: Այլ որպէս յԵրկրորդ Մակաբայեցւոցն ասէ, թէ` Յասոն Կիւրենացի 'ի հի՛նգ գիրս բաժանեաց զպատմութիւնս Մակաբայեցւոցն լայն և ճոխ բանիւ. զորս յետոյ առեալ համառօտեցին վասն հեշտի՛ ընթերցողաց: Արդ` երևի յերկոցունց գրոցս զի 'ի միջէ նախագրեալ օրինակէ, 'ի հնգից գրոցն ասեմ Յասոնեայ երկուք ումանք համառօտեցին. յայտ է` զի յայլ և յայլ տեղիս կամ ժամանակս. ուստի է ինչ զոր համաձայնին, և է ինչ զոր յաւելուն մի քան զմի: Բայց զանուանս իւրեանց ո՛չ եդին ըստ առաջնոցն պատճառի, զոր 'ի Դատաւորացն և 'ի Թագաւորութեանցն յառաջաբանսն ասացաք:

## Գլուխք Առաջին գրոցն Մակաբայեցւոց

Ա̃. Թէ յետ հարիւր և յիսուն ամի մահուանն Աղէքսադրի թագաւորեաց Ասորւոց և Բաբելոնի Անտիոքոս Եպիփանէս. նա բռնադատէր զԻսրայէլ 'ի կռապաշտութիւն, եւ պատերազմ ընդ Փիղոմետոր Պտղոմեայ Եգիպտացւոյ, և դարձաւ յոլով աւարաւ. եկն յԵրուսաղէմ, կողոպտեաց զտաճարն Աստուծոյ, և սպա՛ն զբազումս 'ի Հրէից:

Բ̃. Առաքեաց ապա զօրավար, որ 'ի բուռն առեալ զգանձս և զամրոցն` եմոյծ 'ի միջնաբերդն Երուսաղեմի հեթանոսս յորոգայթ Հրէից, պղծեաց զտաճարն սուրբ, և կռապաշտեցո՛յց զյոլովս 'ի Հրէից. և այլք շփոթեալք գնացին փախստեայք:

Գ̃. Ջեռեղեցաւ Մատաթի քահանայ որդւովքն 'ի Մովդիիմ. եկին սպասաւորքն Անտիոքու` ստիպէին զքաղաքն 'ի պաշտօն կռոցն. որոց ընդդէմ կացեալ Մատաթի, սպան զՀրէայն որ զոհեաց կռոցն, և ինքն բազում ընկերօք նստաւ յամուրս լերանցն:

Դ̃. Սպանին զօրքն Անտիոքու 'ի լեռնամուտ Հրէիցն 'ի շաբաթու հազար ոգի. իսկ Մատաթի հզօր ընկերօք եհար սատակեաց 'ի նոցունց բազումս 'ի շաբաթու. կործանէր զբագինս, վանէր զանօրէնսն, և պայծառ յաղթութեամբ կեցեալ` վախճանէր:

Ե̃. Յուդա Մակաբէ զօրապետ Հրէից` սպան զԱպողոնիոս, և փախոյց զՆրէն սպարապետ Անտիոքու. և ինքն կայր մեծաւ ճոխութեամբ:

Զ̃. Դիմեաց Անտիոքոս յԱնտիոք քաղաքէ աւարել ապուռել զաշխարհն Պարսից. յանձն արար զորդին և զզօրսն իշխանին Լիւսեայ, պատուէր տուեալ նմա ջնջել սատակել զՀրէայսն յերկրէ:

Է̃. Առաքէր Լիւսիաս երիս զօրավարս 'ի վերայ Հրէից. զորս Յուդայեանք սաստկապէս հարեալ առին յաւարի. իսկ ապա Լիւսիաս եկեալ ճակատեալ, պարտեալ վատթարեալ դառնայր ամօթով:

Ը̃. Սրբեաց Յուդա զտաճարն որ պղծեալ էր յերից ամաց. շինեաց զամրոցն Սիոն յաշտարակս ամուրս յերեսաց հեթանոսաց:

Թ̃. Պէսպէս քաջութիւնք Յուդայ և եղբարց իւրոց 'ի մարտս բազումս, վանեալ զՏիմոթէոս, զՀրէայսն փրկեալ 'ի կողմանս կողմանս` զամուրս հեթանոսաց քանդելով. և զի պարտեցան Յովսեպոս Զաքարեանց և իւրքն յերեսաց Գէորգեայ 'ի հարուածս սաստիկս:

Ժ̃. Անտիոքոս 'ի Պարսից փախստեայ անկեալ 'ի Բաբելոն, լուա՛ւ զբօթ պարտութեան զօրացն 'ի Հրէաստան. սրտաբեկեա՛լ եղև, զի գտին զնա չարիքն զոր անցոյց ընդ Երուսաղէմ. յանձնեալ Փիլիպեայ զզօրսն, և զի թագաւորեցուսցէ զորդին իւր, և ինքն անդէն չարաւ մեռանէր:

ԺԱ̃. Թագաւորեցոյց Լիւսիաս զհօրանոյն Անտիոքոս, որ և 'ի բանսարկու չարախօսաց զայրացեալ Հրէից եկն զօրօք և փղօք պաշարեաց զԲեթսուր. որում Մակաբեանք 'ի դիմի՛ հարան քաջութեամբ. ուր և Եղիազարոս Աւարան եղբայր Յուդայի կործանեալ զփի՛ղ մի նշանաւոր` ճմլեցաւ ընդ նովաւ. իսկ նա ա՛ռ զԲեթսուր, և պաշարեաց զԵրուսաղէմ. և հաշտութիւն խօսեցեալ եմուտ յԵրուսաղէմ, և կործանեաց զպարիսպս նորա:

ԺԲ̃. Դեմետրիոս Սելևկեանց հռովմայեցի թագաւորեաց ծովեզերեայց. և ըմբռնեալ սպան զԱնտիոքոս. առ նա՛ Յակիմոս անօրէն չարախօսէր զՅուդայէ` ա՛կն եդեալ քահանայութեանն, և նա ետ ընդ նմա զԲաքիդդ. որ ո՛չ կարաց ըմբռնել զՅուդա. եկն ապա Նիկանովր, և սպառնացաւ տաճարին հրով, և ճակատեալ ընդ Յուդայի` սպանա՛ւ ինքն և զօրքն. և կախեցաւ գլուխն ձեռամբն զպարսպէն Երուսաղեմի:

ԺԳ̃. 'Ի համբաւ յաղթութեանն Հռոմայեցւոց` ձե՛ռն առ նոսա տուեալ Յուդայի, զոր ընկալեալ դաշամբք` գրեցին Դեմետրեայ մի՛ մեղանչել Հրէից. որոց ո՛չ անսացեալ գումարեաց զօրս ընդ Յակիմայ և Բաքիդդեայ. որոց քաջապէս պատահեալ Յուդայի, անկա՛ւ 'ի պատերազմին:

ԺԴ̃. Յետ նորա եկաց Յովնաթան, և որդիքն Ամբրեայ Հրամանաւ Բաքիդդեայ կալան զՅովհաննէս եղբայր Յովնաթանեայ, զորոյ փութապէս առին վրէժ յորդւոցն Ամբրեայ 'ի հարսանեկաց անտի: Բռնացան Բաքիդեանք, կալան զքաղաքս: Յակիմոս քակել սկսաւ զսրահ սրբութեանցն և հարաւ յԱստուծոյ. և Բաքիդէս իբրև ո՛չ կարաց կալով զՅովնաթան` չոգաւ և այլ ո՛չ դարձաւ:

ԺԵ̃. Թագաւորեաց Աղէքսանդրոս Անտիոքեանց 'ի Պտղոմիդեա, և պատրաստէր 'ի մա՛րտ ընդ Դեմետրի. առաքէր Դեմետր առ Յովնաթան բանս հաշտութեան: Լուաւ Աղէքսանդրոս` և առաքեաց Յովնաթանու թագ և ծիրանիս, և եղև նմա ուխտադիր. զոր քակելոյ սակս յղեաց Դեմետր առ Յովնաթան բազում խոստմամբք ձգել զնա առ իւր, որում ո՛չ կալաւ յանձին, այլ մնա՛ց ընդ Աղէքսանդրի:

ԺԶ̃. Սպանաւ Դեմետր առաջի Աղէքսանդրի, և Աղէքսանդր փեսայացեալ Եգիպտեայ Պտղոմէի` մեծապէս շքով պատուեաց զՅովնաթան:

ԺԷ̃. Դեմետր որդի Դեմետրեայ 'ի Կրէտեայ ուշ եդեալ հայրենեացն գալ յԱնտիոք. սպառնալիս, և զօրս 'ի ձեռն Ապողոնեայ առաքէ 'ի մարտ ընդ Յովնաթանու. զորս սաստիկ հարեալ Յովնաթան` տիրէ Ազովտայ և Ասկաղոնի. կրկին պատուի յԱղէքսանդրէ ոսկի թագիւ. առնու և զԱկկարոն հանդերձ սահմանօքն:

ԺԸ̃. Պտղոմէու աներ Աղէքսանդրու նենգութեամբ յինքն շորթեաց զաշխարհ փեսային մինչև ցՍելևկիա, և հանեալ 'ի նմանէ զդուստրն ետ Դեմետրի. իսկ Զաբէէլ Արուայիկ հատեալ զգլուխն Աղէքսանդրի մատոյց Պտղոմեայ, և յաւուրն երրորդի մեռաւ Պտղոմէոս:

ԺԹ̃. Թագաւորէ Դեմետր. իսկ Յովնաթան պնդեալ մենքենայիւք զմարտն 'ի վերայ միջնաբերդին Երուսաղեմի, ընդ որ բարկանայր Դեմետր. առ որ եկեալ Յովնաթան` բազում պատիւս և օժիտս հարկաց գտեալ 'ի նմանէ դառնայր:

Ի̃. Ապստամբեալ զօրքն 'ի Դեմետրեայ թագաւորեցուցանել զԱնտիոքոս Աղէքսանդրեան. խնդրեաց Յովնաթան 'ի Դեմետրեայ` տալ նմա 'ի ձեռս զմիջնաբերդն Երուսաղեմի, զոր խոստացաւ և ա՛յլ ևս` միայն զի տացէ նմա զօրս 'ի Հրէից զխապահս զի մի՛ սպանցի. որովք իբրև փրկեցաւ` ո՛չ ևս եկաց 'ի խոստմունսն:

ԻԱ̃. Թագաւորեցոյց Տրիփոն զԱնտիոքոս. յորմէ 'ի պատահելն մարտին` յաղթահարեալ Դեմետրի գնա՛ց փախստեայ:

ԻԲ̃. Մեծապէս պատուեաց Անտիոքոս զՅովնաթան ոսկի սպասուք և թագիւ (շգեղբ). և զՇմաւոն եղբայր նորա սպարապետ 'ի Ծուրայ մինչև ցԵգիպտոս. և ո՛չ կարացին իշխանք Դեմետրի խախտել զՅովնաթան. այլ կային մեծաւ փառօք պսակեալք յաղթութեամբ:

ԻԳ̃. Առաքեաց նորոգեաց Յովնաթան զսէրն առ Հռոմայեցիս. զոր ընկալեալ գրեցին եղբարս գոլ Հրէից զՍպարտիացիս, և յԱբրահամէ սերեալս:

ԻԴ̃. Գումարեցան դարձեալ 'ի վերայ Յովնաթանու իշխանք Դեմետրի, որոց ընդ առաջ եղեալ պատրաստէր գիշերամարտի. յորմէ զարհուրեալ թշնամեացն խիտ առ խիտ խարոյկս վառեալ թողին և փախեան:

ԻԵ̃. Քաջութիւնք Յովնաթանու 'ի վերայ Արաբացւոց, Դամասկացւոց, Յոպպէացւոց. և զի ամուր շինուածովք փակեալ պաշարեաց նեղել զորս 'ի միջնաբերդին Երուսաղեմի, ո՛չ տալով մուտ կամ ել. նաև զպարիսպն ամրացոյց զԵրուսաղեմի:

ԻԶ̃. Խնդրէր Տրիփոն թագաւորել, այլ կասկածէր 'ի Յովնաթանայ. իբրև յայտնի պատերազմաւ ո՛չ կարէր ունել, նենգութեամբ թօթափեաց զզօրսն 'ի նմանէ. կալաւ նա 'ի Պտղոմիդեայ. և սպան զորս ընդ նմա: Սգացին զնա, և կացուցին զՇմաւոն 'ի տեղի նորա. առ որ յղեաց Տրիփոն թէ վասն պարտուց արծաթոյ ունիմ զՅովնաթան. արդ տո՛ւր զարծաթն և զորդիսն պատանդս. իբրև առ` սպան զՅովնաթան. զոր բարձեալ թաղեաց Շմաւոն առ հօրն և եղբարցն:

ԻԷ̃. Սպան Տրիփոն զԱնտիոքոս մանուկ և թագաւորեաց: Շմաւոն ամրացոյց զերկիրն, և խնդրեաց հաշտութիւն 'ի Դեմետրեայ. յանձն առ և արար խաղաղութիւն և ազատութիւն Հրէից. պաշարեաց Շմաւոն և ա՛ռ զԳազա. նեղեցան և որք 'ի միջնաբերդին, և ետուն զնա 'ի ձեռս Շմաւոնի. զոր սրբեալ բնակէր

*՚ի ներքս սեպհական գնդան, և կացոյց զՅովնաթան որդի իւր սպարապետ զօրուն:*

*ԻԸ. Ա՛նց Դեմետր ՚ի Մարս և ՚ի Պարթևս, առնուլ թիկունս և մարտնչել ընդ Տրիփոնեայ, ըմբռնեցաւ ՚ի Պարթևացն և եդաւ ՚ի բանտի: Եւ յաւուրս Շմաւոնի մեծաւ խաղաղութեամբ և բարեփառութեամբ կայր ազգն Հրէից:*

*ԻԹ. ՚Ի տախտակս պղնձիս թղթեն Հռոմայեցիք առ Շմաւոն. որոց արձակեաց զհրեշտակս և վահան ոսկի. զի այս երիցս անգամ հաստատեցաւ ուխտ հաշտութեան ՚ի միջի սոցուն. և զի ընդարձակս գովեն Հռոմայեցիք զՇմաւոն՝ հաստատելով զտէրութիւն նորա:*

*Լ. Անտիոքոս Դեմետրեանց որ է Սիդէացին՝ պատուէ մեծապէս զՇմաւոն փառօք և ազատութեամբ հարկաց, և ինքն զհետ մտեալ Տրիփոնեայ՝ ա՛րկ զնա փախստեայ ՚ի Դովրա քաղաք ծովեզերեայց, և անդ պաշարեաց:*

*ԼԱ. Եկին հասին հրովարտակք Հռոմայեցւոց առ Պտղոմէոս Էրգետէս, և առ այլ թագաւորս՝ Ասիացւոց, Պարսից, յաշխարհս և յազգս, զի պատուեալ լիցին Հրէայք, և մի՛ ոք նոցա մեղիցէ:*

*ԼԲ. Դարձաւ շրջեցաւ Անտիոքոս թշնամութեամբ ընդ Շմաւոնի, իբրև փախեաւ Տրիփոն ՚ի նմանէ, ետ զօրս ՚ի ձեռն Կենդեբեայ յաւարի առնուլ զՀրէայս. որոց ընդդէմ գումարեաց Շմաւոն զզօրսն և զորդիսն, որք զբազումս սրով հարեալ, զփախստեայսն ՚ի բուրգսն Ազովտայ հրով այրեցին, և դարձան յաղթութեամբ:*

*ԼԳ. Աղէքսանդրոս փեսայ Շմաւոնի ա՛կն եդեալ իշխանութեանն, նենգութեամբ ա՛ծ զՇմաւոն որդւովքն ՚ի մեծարանս կոչնոց. իբրև ընդ գինիս մտին, սպան զՇմաւոն և զորդիսն որք ընդ նմա էին ՚ի Դովրա քաղաքի: Յովհաննէս որդի նորա իբրև լուաւ զսպանումն հօրն և զեղբարցն, զգուշացաւ անձին. և եղև քահանայապետ, և կալաւ զիշխանութիւնն յետ հօրն. և ՚ի նմանէ որդի ՚ի հօրէ մինչև ցՀերովդէս, յորոյ աւուրս ծնաւ Քրիստոս:*

*Արդ՝ են ժամանակք պատմութեան գրոցս այսոցիկ, ՚ի թագաւորելոյն Անտիոքայ երևելոյ մինչև ՚ի մահն Շմաւոնի, ամք քառասուն և հինգ, և անտի մինչև ցՀերովդէս ամք հինսուն և վեց: Բայց Գիրքս Մակաբայեցւոց, ո՛չ ՚ի մահուանէն Աղէքսանդրի՝ այլ յետ տասն ամի, յերրորդ ամէն Կասանդրեայ, որ զկնի Փիլիպոսի Արիդեայ եւթն ամին թագաւորեաց Մակեդոնացւոց՝ սկսանի թուել զժամանակս Յունացն:*

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑ

**1** *Եւ յետ հարուածոցն Աղէքսանդրի կայսեր Մակեդոնաց-
ւոց որդւոյ Փիլիպպեայ. որ խաղա՛ց գնաց նա յերկրէն
Քետիմացւոց, ՚ի ժամանակի զի հարկանէր զԴարեհ ար-
քայ զՊարսից և զՊարթևաց. և որ թագաւորեաց իսկ յետ
նորա, ՚ի վերայ Յունաց աշխարհին և Հռոմոց: [2]Եւ զօ-
րաժողո՛վ լինէր մեծա՛ւ պատերազմաւ, զամուրս հարկա-
նէր, զբազում թագաւորս ՚ի սո՛ւր սուսերի իւրոյ սատակէր.
[3]առնոյր զօր բազում ազգաց ազգաց հեթանոսաց. և
սարսէր երկիրս ամենայն առաջի նորա: [4]Զօրաժողո՛վ լի-
նէր զօրօք բազմօք, և հասանէր ՚ի վերայ երկրի, յա-
մենայն պետութեանցն զօրութեանց, [5]և զաշխարհս ամե-
նայն ՚ի հարկի՛ կացուցանէր: [6]Եւ յետ այսր անկանէր ՚ի
մահիճս իւր և զա՛խտս մահու ջերանէր. և իբրև ետես
թէ մեռանիմ, [7]կոչեա՛ց նա զծառայսն դայեկորդիսն իւր,
զչորեսին փառաւորեալս ՚ի նմանէ, որ ընդ նմա՛ իսկ սնեալ
էին ՚ի մանկութենէ. և բաժանեաց և ետ նոցա զարքա-
յութիւնն իւր, մինչդեռ ինքն կենդանի՛ էր: [8]Եւ թագա-
ւորեա՛ց Աղէքսանդրոս ամս երկոտասան՝ և մեռաւ: [9]Յետ
նորա զատեալ հաստատեցան կացին յիւրաքանչիւր տէ-
րութեան դայեկորդիքն իւր, [10]թա՛գ կապեցին իւրաքան-
չիւր յետ մահուան նորա. և որդիք նոցա յետ նոցա՝ ամս
բազումս. բազմացուցին զանօրէնութիւնս, և լցին զերկիր
չարեօք իւրեանց:*

Ա *[11]՚Ի նոցանէ բղխէր արմատ չարի, շառաւի՛ղ դառնու-
թեան անօրէնն Անտիոք, որդի Անտիոքայ արքայի, որ էր
մնացեալ ՚ի պատանդս ՚ի Հռոմ քաղաքի: Եւ թագաւորեաց
նա յամին հարիւրորդի երեսներորդի եւթներորդի թագա-
ւորութեանն Յունաց: [12]Յաւուրս ժամանակացն այնոցիկ,
ելի՛ն զատան յորդւոցն Իսրայէլի ա՛րք անօրէնք, ՚ի բանս
պատիրս՝ ՚ի բանս հրապուրանաց արկին զբազումս՝ և ա-
սէն. Եկայք՝ երթիցո՛ւք ո՛ւխտ դիցուք և դաշինս կռեսցուք՝
ընդ ամենայն ազգս հեթանոսաց՝ որ շուրջ զմեւքդ բնակ-
եալ են. զի յաւուրցն ժամանակաց հետէ՝ յորմէ անջատաք
մեկնեցաք մեք ՚ի նոցանէ, չարիք բազումք կարևորք ե-
կի՛ն հասին ՚ի վերայ մեր: [13]Հաճո՛յ թուեցաւ բանն ՚ի
միտս բազմաց, [14]յօժարեցին ոմանք ՚ի ժողովրդենէ ան-
տի երթալ յանդիմա՛ն լինել թագաւորին: Եւ ե՛տ նոցա իշ-
խանութիւն թագաւորն՝ գործել զամենայն իրաւունս ըստ
օրինա՛ցն հեթանոսաց: [15]Եւ շինեցին հրապարակս մեհենիցն
յԵրուսաղէմ ըստ օրինացն հեթանոսաց. [16]և հաստատե-
ցին իւրեանց օրէնս անթլփատութեան, և ապստամբ եղեն
յուխտէ կտակարանացն սրբութեան. զուգեցան ընդ հեթա-
նոսս, յօժարեցին կանխեցին առնել զչարիս: [17]Եւ իբրև ա-
ջողեցաւ թագաւորութիւնն առաջի Անտիոքայ, ե՛դ ՚ի մտի
իւրում նա՝ թագաւորել և ՚ի վերայ երկրին Եգիպտացւոց՝
միաբանել զերկոսին թագաւորութիւնսն: [18]Դիմեա՛ց խաղա՛ց
գնա՛ց նա ՚ի վերայ երկրին Եգիպտացւոց զօրօք բազմօք՝
կառօք և փղօք, և նաւուք բազմօք, [19]տա՛լ պատերազմ ընդ
Պտղոմեայ թագաւորին Եգիպտացւոց: ՚Ի պարտութի՛ւն
մատնեցաւ Պտղոմէոս յերեսաց նորա, և փախստական լի-
նէր առաջի նորա: Յա՛յնմ մարտի բազում վիրաւորք ան-
կանէին: [20]Ասպատա՛կ սփռէր ընդ աշխարհն ամենայն Ան-
տիոքոս. վա՛ղ հասանէին, արագ արա՛գ զաւարն ժողովէ-
ին, և առնուին զամուրս ամենայն երկրին Եգիպտացւոց:
[21]Եւ յետ հարուածոց Եգիպտացւոցն դարձաւ Անտիոքոս:
Յամին հարիւրորդի քառասներորդի երրորդի [22]եկն եհաս
՚ի վերայ քաղաքին Երուսաղէմացւոց մեծա՛ւ պատերազ-
մաւ: [23]Եւ եկն եմուտ ՚ի սրբութիւն անդր մեծաւ հպարտու-
թեամբ. և ա՛ռ նա զսեղանն ոսկի, և զաշտանակն լուսոյ, և
զամենայն կա՛հ գանձին. զսեղանն պատարագաց, զսկիհսն,
և զտաշտսն, և զխնկաղացսն, և զվարագոյրսն ամենայն.
զպսակսն, և զզարդն ոսկի: [24]Եւ զառաջինն դիմեաց յան-
դիման տաճարին. կեղևեաց ձուլեաց զամենայն. և ա՛ռ նա
զարծաթն և զոսկին, զզէնսն և զզարդն, և զամենայն զկազն
պատերազմին. և ա՛ռ նա զգանձս ծածկեալս զոր եգիտ, և
զամենայն անօթ ցանկալի. և գնաց նա յերկիր իւր: [25]Եհեղ
արիւն բազում, և գործեաց մահունս անհամարս. խօսե-
ցաւ զամբարտաւանութիւն մեծա՛ւ հպարտութեամբ: [26]Եւ ե-
ղև սուգ մեծ ՚ի վերայ Իսրայէլի. ընդ ամենայն տեղիս իւր-
եանց [27]հեծեցին իշխանք և ծերք. կուսանք և երիտասարդք
տկարացան. եղծա՛ւ գեղ կանանց. [28]և ամենայն փեսայից
լի՛ եղեն բերանք ողբոց լալութեան. և ամենայն հարսանց
եղեն արգելանք սգոյ սրսկապանք իւրեանց. [29]և շարժե-
ցաւ երկիր ՚ի վերայ բնակչաց իւրոց. և ամենայն տունն
Յակոբայ զգեցաւ զամօթ զանարգանաց:*

*[30]Զհետ երկուց ամաց ժամանակացն այնոցիկ, արձակ- Բ
եա՛ց արքայ Անտիոքոս իշխան հարկահան ՚ի քաղաքսն
Հրէաստանի, և եկն յԵրուսաղէմ զօրօք բազմօք, [31]խօսե՛լ
սկսաւ բանիւք խաղաղութեան նենգութեամբ. և նոքա
հաւատացին նմա: [32]Եւ անկա՛ւ նա ՚ի վերայ քաղա-
քին յանկարծակի, և հար զնոսա հարուածս մեծամեծս.
և սատակեա՛ց ժողովս բազումս յԻսրայէլէ: [33]Եւ ա՛ռ նա
զաւար քաղաքին, և հրձի՛գ արար զամենայն փայտակերտ
զապարանից նորա. քակեաց և աւերեաց շուրջ զպարիսպս
քաղաքին, և զամենայն զորմս շինուածոց զապարանի՛ց նո-
րա: [34]՚Ի գերութիւն վարեցին զկանայս և զմանկունս, և
զամենայն անասունս նոցա ՚ի ժառանգութիւն իւրեանց:
[35]Եւ շինեցին զամրակողմն զգլո՛ւխ քաղաքին ՚ի պա-
րիսպս ամուր, յաշտարակս հզօրաց. և եղև նոցա այն իբ-
րև բե՛րդ ՚ի բերդի ամրացեալ քաղաքին. [36]և անդր մուծին
ազգ մեղաւոր զարս անօրէնս, ամրացուցին լցին զինու.
հանդերձեցին լցին համբարօք, և զամենայն զօրն Երուսա-
ղեմի [37]՚ի նե՛րքս կուտեցին. և եղեն յորոգայթ մեծ, [38]և ՚ի
խափան սրբութեանն և ՚ի սատանայ չա՛ր տանն Իսրայէլի
հանապազորդ. [39]և հեղին զարիւն զարդար շուրջ զսրբու-
թեամբն, և պղծեցին զսրբութիւնսն: [40]Փախստեա՛յ գնացին*

---

**1**.1 Ոմանք. *Գնաց նա յերկրէն Քետացւոց... որ և թագաւորեաց իսկ... և Հռոմոց:* 3 Ոմանք. *Առնոյր զաւար բազում:* 6 Ոմանք. *Եւ զախտ մահու... եթէ մեռանի:* 7 Ոմանք. *Դայեակորդիսն իւր:* 9 ՚Ի բազումս պակասի. Յետ նորա զատեալ հասան՛՛: 11 Ոմանք. *Արմատ չար, շառաւեղ... որ սերմանեալ ՚ի պատանդս:*

12 Ոմանք. *Յորմէ անջատեցաք:* 17 Օրինակն պակասէր. Թագաւորել և ՚ի վերայ: Ոմանք յաւելուն. Եւ ՚ի վերայ խաղաղութեան *երկրին Ե՛:* 19 Ոմանք. *Եւ յայնմանէ բազում վիրաւորք անկա՛՛:* 20 Ոմանք. *Արա՛գ արա՛գ զօրն ժողովէին:* 21 Յայլս պակասի. *Քառասներորդի* երրորդի: 22 Ոմանք յաւելուն. *Եկն եհաս նա ՚ի վերայ:* 23 ՚Ի լուս. ՚ի վերայ՝ *Մեծաւ,* նշանակն՝ *բազում:* Որպէս և ոմանք. *Անդր հպարտութեամբ բազմաւ:* 25 Ոմանք. *Եւ հեղ արիւն բազում:* 28 Այլք. *Լի՛ էին բերանք ող՛՛:* 32 Այլք. *Եւ սատակեաց ժողովուրդս բազումս:* 36 Ոմանք. *Լցուցին զինու... և զամենայն զաւարն Երուսաղեմի:* 38 Ոսկան. *Եւ ՚ի սատան չար տանն:*

[18]Քաջալերե՛լ սկսաւ զնոսա Յուդա՛ և ասէ. Գո՛րծ մի դիւ-
րի՛ն է Աստուծոյ մատնել զբազումս ՚ի ձեռս սակաւուց. և
ո՛չինչ է խտիր առաջի երկնաւորի՛ն ընդ բազումս կամ ընդ
սակաւս. [19]զի ո՛չ եթէ բազում զօրք յաղթութիւնն կանգ-
նի, այլ յերկնի՛ց է զօրութիւն յաղթութեան: [20]Նոքա գա՛ն ՚ի
վերայ մեր ՚ի Հպարտութիւն ամբարտաւանութեան անօ-
րէնութեամբ զմեզ ջնջե՛լ, զկանայս և զորդիս մեր վարե՛լ
՚ի գերութեան. [21]մեք մարտնչիմք վասն անձանց մերոց,
և վասն օրինաց մերոց. [22]և Տէր սատակեսցէ՛ զնոսա ա-
ռաջի ստից մերոց. և դուք զօրացարո՛ւք, քա՛ջ լերուք՝ մի՛
զանգիտէք: [23]Ա՛յն ինչ բանքն ՚ի բերան էին, յարձակէր ՚ի
վերայ գնդին. զա՛յն թէ բեկանէր յորում վառեալ կայր Նրէն
արքայ, և շարժէր զգունդն ՚ի տեղւոջէ, և զզօրսն ամենայն
առաջի նորա նովա՛ւ Հանդերձ ՚ի փախուստ դարձուցա-
նէր. [24]և ինքեանք զՀետ լինէին նոցա մինչև ՚ի կողմանս
Բեթովրայ դաշտին. և բազում վիրաւորս ՚ի նոցանէ դիա-
թաւալ յերկի՛ր կացուցանէին. և անկանէին ՚ի նոցանէ իբ-
րև արք ութ Հարիւր. և որ մնացեալքն էին՝ փախստեայք
անկանէին ՚ի Փղշտիմ: [25]Եւ սկսաւ ա՛հն և Հոյն երթա՛լ
առաջի Յուդայ և եղբարցն. յօժարէին այնուՀետև ասպա-
տակ տա՛լ ՚ի Հեթանոսս որ շուրջ էին զնոքօք: [26]Եւ եկն
եՀա՛ս մինչև ՚ի թագաւորն անուն նորա. և վասն պատե-
րազմացն պատմէին Հեթանոսքն:

Ջ [27]Իբրև լուաւ Անտիոքոս կայսր զբանս զայս, բարկա-
ցաւ ՚ի սրտմտութիւն բարկութեան իւրոյ. զօրաժողով լինէր
յամենայն աշխարՀաց իւրոց, զօրս կուտէր բազում յոյժ.
[28]գա՛նձ բանայր՝ պարգևս բաշխէր զօրացն տարւոյ միոջ.
և պատուէ՛ր տայր կա՛լ նոցա պատրաստ յիրս ամենայն:
[29]Իբրև ետես թէ գանձք սպառեցան, և Հարկ աշխարՀին
նուազեաց, վասն երկպառակութեանն և Հարուածոցն, որ
ած նա ՚ի վերայ երկրի, յեղծանել օրինաց նախնեացն,
որ էին իսկզբանէ աւուրց ժամանակաց. [30]զարՀուրեցա՛ւ թէ
գուցէ ո՛չ բաւեցուսցէ զպարգևսն և զռոճիկս, որպէս յա-
ռաջ առատաձեռն բաշխէր. [31]վարանէր յանձն իւր. խորՀե-
ցաւ մտանել յաշխարՀն Պարսից. առնուլ Հա՛րկ յաշխարՀաց
անտի կուտել արծա՛թ յոյժ: [32]Եւ եթո՛ղ նա անդ զԼիւսի՝ այր
փառաւոր յազգէ թագաւորութեանն, ՚ի վերայ իրացն ար-
քունի ՚ի կողմանցն Եփրատու, և ՚ի սաՀմանս Եգիպտաց-
ւոց, [33]սնուցանե՛լ զորդի իւր զԱնտիոքոս, մինչև դարձցի
նա անդրէն. [34]և եթո՛ղ առ նմա զկէս զօրացն և զփիղսն.
և պատուէ՛ր ետ նմա վասն ամենայնի որ ինչ կամէր, և որ
զինչ խորՀեցաւ. և վասն բնակչացն Հրէաստանի և Երու-
սաղեմի: [35]Եւ գումարտա՛կ արար ՚ի վերայ նոցա սատակել
զնոսա, և ջնջե՛լ զզօրութիւնն Իսրայէլի, և զմնացորդսն Ե-
րուսաղեմի. և ջնջել ՚ի տեղւոջէ անտի զյիշատա՛կ նոցա.
[36]և բնակեցուցանե՛լ անդ զորդիս օտարաց ընդ ամենայն
սաՀմանս նոցա. լարաբաժի՛ն առնել զամենայն երկիր նո-
ցա. [37]և ինքն ա՛ռ զկէս ՚ի զօրաց անտի: Խաղա՛ց գնաց
յԱնտիոք քաղաքէ ՚ի տանէ թագաւորութեան իւրոյ. յամի
Հարիւրորդի քառասներորդի. և անց նա ըստ գետն մեծ
ըստ Եփրատ, և երթա՛յր ընդ կողմն վերնագաւառացն:

Է [38]Եւ ընտրեաց Լիւսիաս զՊտղոմէոս պարգևական, և
զՆիկանովր, և զԳորգիաս, ա՛րս Հզօրս բարեկա՛մս խոր-
Հրրդականս արքայի: [39]Եւ ընդ նոսա առնէր գումարտակ
քառասուն Հազար Հեծեալ, և եւթն Հազար ձի ասպաստա-
նիկ, գալ Հասանել ՚ի վերայ երկրին Հրէաստանի, Հար-
կանե՛լ սատակել զաշխարՀն, յապականութիւն դարձուցա-
նել զերկիրն ըստ Հրամանի թագաւորին: [40]Խաղացին գնա-
ցին ամենայն զօրօքն Հանդերձ, և եկին Հասին բանակե-
ցան մերձ ՚ի Յամուով, ՚ի տափակողմն ՚ի դաշտագետին
վայրին: [41]Լո՛ւ եղև վաճառականաց աշխարՀին, եթէ եկ-
եալ Հասեալ են զօրք՝ աւա՛ր առնուլ զերկիրն Հրէաստա-
նի, ՚ի գերութիւն վարել զորդիս և զդստերս նոցա. ա-
ռին զարծաթ և զոսկի իւրեանց, և մարդիկ բազում որչափ
ձեռնՀա՛ս էին օգնականք իւրեանց. գա՛լ գնել զորդիսն Իս-
րայէլացւոց յանաշխարՀիկս իւրեանց. և յաւելան ՚ի նոսա
զօրք Ասորւոց, և երկի՛րն այլազգեաց: [42]Իբրև ետես Յուդա
և եղբարք իւր՝ եթէ եկին Հասին ամենայն չարիքն ՚ի վե-
րայ նոցա. և ա՛յս զօրք ամենայն եկեալ Հասեալ պաշարեալ
պաՀէին զսաՀմանս նոցա. և գիտացին զՀրամանս թագա-
ւորին, զոր պատուիրեաց սատակել զժողովուրդն ՚ի կո-
րուստ և յապականութիւն. [43]սկսան խօսել ա՛յր ընդ ընկե-
րի և ասեն. Եկա՛յք պնդեսցուք զանձինս մեր, կանգնեսցո՛ւք
զգլորումն ժողովրդեան մերոյ, տացո՛ւք պատերազմ ՚ի վե-
րայ սրբութեանցն՝ և ՚ի վերայ ազգաց մերոց: [44]Եւ ժողո-
վեցան ժողովք ՚ի պատրաստութիւն պատերազմի. կային
յաղօթս և խնդրէին զողորմութիւն ՚ի Տեառնէ: [45]Եւ էր Ե-
րուսաղէմ աւերակ թափո՛ւր, և ո՛չ ոք էր որ մտանէր և
ելանէր յազգաց նորա, և սրբութիւնն կայր կոխան յորդ-
ւոցն այլազգեաց. և ամրակողմն գլուխ քաղաքին բնակու-
թիւն եղև Հեթանոսաց. և բարձա՛ն ուրախութիւնք Յակո-
բայ, պակասեցին փողք և տաւիղք, և լռեցին ամենայն
ցանկալի ուրախութիւնք արուեստականաց: [46]Եկին ժողո-
վեցան ամենեքին ՚ի Մասեփա՝ դէմ յանդիման Երուսաղե-
մի. զի անդ էր տեղի աղօթից յառաջ Իսրայէլացւոցն ՚ի
Մասեփա: [47]Ծո՛մ կարդացին, քրձազգա՛ծ լինէին, խո՛րգ և
մոխի՛ր առնուին, Հող ՚ի գլո՛ւխ լինէին, զօձիս պատառէին:
[48]Զմատեանս օրինացն տարածանէին, վասն որոյ պնդէ-
ին զնոսա Հեթանոսք. [49]և բերէին զՀանդերձս քաՀանայու-
թեանն, և զճնունդս անդրանկացն, և զտասանորդսն ՚ի
մէջ առնուին. յարուցանէին և ածէին զուխտաւորսն որոց
լցեալ էր զաւուրս իւրեանց: [50]՚Ի ձա՛յն բարձր միաբարբառ
աղաղակէին յերկինս և ասէին. Արդ զի՞ արասցուք զսյսո-
սիկ, կամ յո՞ տարցուք. [51]զի՞ սրբութիւնք քո կոխան եղեն,
և քաՀանայք քո ՚ի սո՛ւգ և ՚ի տառապանս նստին: [52]Եւ
ամենայն Հեթանոսք ժողովեալ են աւասիկ ջնջե՛լ զմեզ. դու
գիտես որ ինչ խորՀին նոքա ՚ի վերայ մեր: [53]Արդ զի՞-
ա՞րդ կարասցուք մեք զդէմ ունե՛լ՝ եթէ ո՛չ դու օգնեսցես
մեզ: [54]Փո՛ղ Հարկանէին, զաղաղա՛կ դնէին, ՚ի ձա՛յն բարձր
յերկինս կարդային: [55]Յե՛տ այսորիկ կարգե՛լ սկսաւ Յու-
դա զժողովուրդսն, և կացոյց ՚ի վերայ նոցա իշխանս՝ Հա-
զարապետս, և Հարիւրապետս, և յիսնապետս, և տաս-
նապետս: [56]Եւ ասէն ցայնոսիկ որ շինէին շինուածս, և
խօսէին կանայս, և տնկէին այգիս, և պատուէ՛ր տա-
յին վատասրտացն զի դարձցին ՚ի տունս իւրեանց ըստ
օրինացն: [57]Եւ ամենայն զօրքն Հասանէին և բանակէին
՚ի թիկանց Ամաւոյ: [58]Անդուստ քաջալերել սկսաւ Յու-
դա զզօրսն՝ և ասէ. Վառեցարո՛ւք պատրաստեցարո՛ւք
զօրացարո՛ւք, վաղորդայն տա՛լ պատերազմ ընդ Հեթանոսս
ընդ այսոսիկ որ ժողովեալ են ՚ի վերայ մեր ջնջե՛լ զմեզ՝ և
զսրբութիւնս մեր. [59]զի լա՛ւ լիցի մեզ մեռանե՛լ ՚ի պատե-
րազմի, քան տեսանել զչարչարանս ազգի մերոյ և սրբու-
թեանցն մերոց: [60]Որպէս և իցէն կամք Տեառն յերկինս,
ա՛յնպէս և կատարեսցին:

4 Եւ յիշեսցէ՛ զուխտ կտակարանացն որ ընդ Հարսն մեր
է, և բեկցէ՛ զզօրս զայս առաջի ստից մերոց: [11]Գիտասցեն
Հեթանոսք եթէ գո՛յ Աստուած որ փրկէ զԻսրայէլ: [12]Եւ ամ-
բարձին զաչս իւրեանց յայլազգիքն, և տեսին զի յարձակ-
եալ գային ընդդէմ նոցա, [13]և ելին յառաջ քան զգունդն
՚ի պատերազմ: Փո՛ղ Հարին ՚ի կողմանցն Յուդայի. [14]՚ի մի՛
վայր ժողովեցան, ՚ի վերա՛յ յարձակէին. ձեռն ՚ի գո՛րծ առ-
նէին, ՚ի փախուստ դարձուցանէին. [15]զբազումս առ ետե՛ղ
սատակէին. զբազումս փախստականս առնէին ընդ երեսս
դաշտին, ՚ի սո՛ւր սուսերի իւրեանց անկանէին՝ մինչ ՚ի
սաՀմանս Գազիրոնայ, ՚ի կողմանս Եդոմայեցւոց, և յԱ-
զովտայ, և Յամնա. և անկանէին յաւուր յայնմիկ վի-
րաւորք իբրև երեք Հազարք այր: [16]Եւ դառնա՛յր Յուդա
զօրօքն Հանդերձ. իբրև գայր Հասանէր ՚ի տեղի պատե-
րազմին, [17]խօսել սկսաւ ընդ զօրսն՝ և ասէ. Մի՛ ինչ աչս
արձակէք դուք յաւա՛ր ՚ի կապուտ դիականցն անկելոց.
[18]զի դեռ աւանիկ Գորգիոս վառեալ պատրաստեալ՝ ընդ-
դէմ կայ մեր զօրօք իւրովք. այլ կացէք կալարո՛ւք զտե-
ղի, զդէմ կալարուք թշնամեաց ձերոց. ապա յետ մար-

20 Ոմանք. Վարել ՚ի գերութիւն: 22 Ոմանք. Մի՛ զանգիտիցէք: Ո–ր Ոսկան. Եւ մի՛ զանգիտէք: 24 Յօրինակին պակասէր. ՚Ի նոցանէ իբրև արք Պ. և որ մնացեալքն: Այլք. Անկանէին ՚ի Փղշտիիմ: 29 Ոմանք. Որ էր իսկզբանէ աւ՛՛: 31 Ոմանք յա–ելու–ն. Յանձն իւր յոյժ: 32 Ոմանք. Եւ ՚ի սաՀմանի Եգիպ՛՛: 33 Յօրինակին. Զորդիս իւր զԱնտիո՛՛: 34 Ոմանք. Եւ զոր ինչ խորՀեցաւ: 37 Յօրինակին. Եւ ինք առ զկէս: Ոմանք. Գնաց յԱնտիոք քարոզել ՚ի տան թագաւորութեան իւրոյ: Ոսկան յա–ելու–. Քառասներորդի եօթներրորդի... ընդ գետն մեծ ընդ Եփրատ: 38 Ոմանք. ԶՊտղոմէոս Պարթևական: 40 Ոսկան. Մերձ Յամաւոյ:

42 Ոմանք. Պաշարեալ պաՀէին: Ո–ր Ոսկան. Զօր ամենայն եկեալ... պարՀէին: 44 Ոմանք. Եւ ժողովեցան ժողովուրդք ՚ի պատրաս՛՛: 45 Ոմանք. Քաղաքին ՚ի բնակութիւն եղև: 46 Այլք. Եւ եկին ժողովէ՛՛: 57 Ոմանք. Հասանէին բնակէին: 58 Ոմանք. Ընդ այնոսիկ որ ժողո՛՛: 4.12 Այլք. Եւ ամբարձին զաչս իւրեանց այլ ազգիքն և տեսին զնոսա զի յար՛՛: 14 Ոմանք. ՚Ի վերայ յարձակեցան: 15 Ոմանք. ՚Ի սուր սուսերի իւրեանց արկանէին: Ոսկան. Եւ Ազովտայ...

Եփրոն քաղաքի. և այս քաղաք՝ է մեծ 'ի վերայ ճանա-
պարհի յամուր վայրի. և ո՛չ գոյր նոցա ա՛յլ ճանապարհ
խոտորել յաջ կամ յահեակ, բայց երթալ ընդ մէջ քաղա-
քին: 47 Իբրև տեսին զօրք քաղաքին զամբոխ զօրացն, և
զբազմութիւն բանակացն՝ զդրունսն փակեցին, զդրանդսն
սեղմեցին վիմօք. և ո՛չ տային անցանել նոցա: Իբրև զա՛յն
ետես Յուդա. առաքեա՛ց առ նոսա բանս խաղաղութեամբ
48 և ասէ. Թո՛յլ տուք՝ անցից ընդ երկիր քո, երթալ ան-
ցանել ինձ յաշխարհ իմ, և ո՛չ ոք ինչ մեղիցէ քեզ. բայց
այնչափ որչափ ոտի՛ւք մերովք կոխեսցուք զերկիր քո: Եւ
ո՛չ առին յանձն նոքա նմա բանալ զդրունսն: 49 Ապա հրա-
մա՛ն ետ Յուդա փո՛ղ հարկանել, քարո՛զ կարդալ և ա-
սել. Հա՛պա՝ իւրաքանչիւր գունդ յորում վայրի և կաց-
ցէ 'ի նե՛րքս խաղասցէ: 50 Եւ մատեան զօրքն յիւրաքան-
չիւր տեղւոջ յորում կային 'ի մա՛րտ պատերազմի, զա-
մենայն տիւն և զամենայն գիշերն 'ի մարտ, մինչև մատ-
նեցաւ քաղաքն 'ի ձեռս նոցա: 51 Անդ սատակեցին զա-
մենայն արու մանուկ նոցա 'ի սուր սուսերի իւրեանց.
խլեցին զնոսա յարմատոց, խաղացուցին զաւար քաղա-
քին, և ինքեանք անցին ընդ մէջ քաղաքին, գնային եր-
թային 'ի վերայ դիականցն անկելոց. 52 և անցին նոքա
ընդ Յորդանան գետ 'ի տափակողմն 'ի դաշտ մի մեծ.
և անդ բանակեցան դէմ յանդիման Բեթսանայ: 53 Եւ անդ
յանձանձէր զկաց մնաց ժողովրդեանն, մխիթարէր զա-
մենեսին Յուդա ընդ ամենայն չո՛ւս ճանապարհին այս-
պէս առնէր մինչև ածէր հասուցանէր յերկիրն Հրէաստա-
նի: 54 Եւ եկին հասին ելին 'ի լեառն Սիովն ցնծութեամբ և
ուրախութեամբ. անդ մատուցանէին զողջակէզս և զպա-
տարագս. զի ո՛չ ծախեցաւ 'ի նոցանէ, մինչև եկին հա-
սին անդրէն 'ի տեղի իւրեանց խաղաղութեամբ: 55 Եւ յա-
ւուրսն յայնոսիկ էր Յուդա և Յովնաթան յերկիրն Գաղա-
ադու. և Շմաւոն եղբայր նոցա էր յերկիրն Գալիլեացւոց,
յանդիման Պտղոմեայ: Իբրև զայն քաջութիւնս պատերազ-
մին լսէին 56 Յովսեպոս Զաքարեանց, և Զաքարի իշխան
զօրացն մնացելոց, 57 ասեն. Եկա՛յք և մե՛ք երթիցուք տա-
ցուք մարտ պատերազմի ընդ հեթանոսս որ շո՛ւրջ զմեւք
են, և արասցուք և մեք մե՛ծ անուն: 58 Ժա՛մ ետուն զօրացն,
խաղացին գնացին 'ի կողմանս Յամնեայ: 59 Եւ ե՛լ Գորգի 'ի
քաղաքէ անտի զօրօք հանդերձ որ ընդ ի՛ւր էին 'ի մարտ
պատերազմի, և հարա՛ւ 'ի դիմի նոցա: 60 'Ի պարտութիւն
մատնեցան Յովսեպոս և Զաքարիա, և հալածականս եր-
թային մինչև 'ի սահմանս երկրին Հրէաստանի: Յայնմ ա-
ւուր անկանէին 'ի նոցանէ արք իբրև երկու հազարք. և
եղեն կործանումն այն սաստիկ 'ի վերայ ժողովրդեանն:
61 Զի ո՛չ անսացին նոքա Յուդայի և եղբարց նորա. խոր-
հեցան՝ թէ մեք իբրև զնա առցուք անուն քաջութեան.
62 բայց նոքա չէին 'ի զաւակէ անտի արանցն այնոցիկ, ո-
րոց տուեալ էր զփրկութիւն Իսրայէլի 'ի ձեռս նոցա: 63 Եւ
ինքն Յուդա և եղբարք իւր փառաւո՛ր լինէին յաչս ժո-
ղովրդեանն՝ առաջի ամենայն ազգաց հեթանոսաց. ուր և
լսէին զանուն նոցա, 64 ժողովէին՝ և օրհնէին զնոսա: 65 Եւ
ե՛լ Յուդա եղբարքն հանդերձ, տա՛լ պատերազմ ընդ որ-
դիսն Եսաւայ 'ի հարաւակո՛ղմ կուսէ անդ: Անդ հարկանէր
զՔեբրոն քաղաք՝ և զդստերս իւր. քակէր կործանէր զա-
մենայն ամուրս նոցա, և հրձի՛գ առնէր զաշտարակս նորա
շուրջանակի ուր և գտանէր: 66 Եւ ե՛լ դիմեաց գնալ նա յեր-
կիրն այլազգեաց, գայր հասանէր 'ի կողմ Մարիսայ: 67 Յա-
ւուր յայնմիկ անկան քահանայք 'ի պատերազմի անդ, մինչ
նա դեռ կամէր քաջութիւն ինչ առնել. զի ե՛լ նա տա՛լ պա-
տերազմ առանց խորհրդոց: 68 Եւ դարձա՛ւ Յուդա 'ի կողմն
Ազովտայ յերկիրն այլազգեաց, աւերէր զմեհեանս նոցա, և
կործանէր զկուռս նոցա, և հրձի՛գ առնէր զքաղաքս նո-
ցա, 'ի գերութեան վարէր զինչս և զստացուածս նոցա, և
դառնայր գնայր յերկիրն Հրէաստանի:

ժ 6 Եւ Անտիոքոս կայսր՝ գնա՛յր նա ընդ վերնագաւառսն.
ապա լո՛ւ եղև նմա եթէ է քաղաք մի 'ի կողմանս Ղիմնեայ
'ի Պարսից աշխարհին, քաղաք փառաւո՛ր, լի՛ ոսկւով և ար-
ծաթով. 2 և մեհեանն որ 'ի նմա, է մեծագանձ յոյժ, և կուռք
ոսկեղէնք ձուլածոյք մեծամեծք 'ի նմա: Ա՛ռ նա՝ զէն բա-
զում, զրահք և պատեանք որ թողեալ էր Աղէքսանդրի կայ-
սեր Մակեդոնացւոց, որ թագաւորեաց նախ 'ի վերայ Յու-
նաց աշխարհին. 3 եկն եհաս նա 'ի քաղաքն յայն, և խնդրէր
առնուլ աւարաբար: Ազդ եղև քաղաքացւոցն. 4 'ի մա՛րտ
պատերազմի պատրաստեցան, և ո՛չ ետուն մտանել: Զահի՛
հարաւ՝ խաղա՛ց գնաց 'ի կողմանցն արևելից յերկիրն Բա-
բելացւոց: 5 Անդր գուժկան հասանէր առ կայսր Անտիո-
քոս 'ի կողմանցն հարաւոյ, թէ 'ի պարտութիւն մատնե-
ցան զօրքն՝ որ ելեալ էին յերկիրն Հրէաստանի: 6 Զի չո-
գաւ զառաջին նուագն Լիւսի զօրօք բազմօք, և 'ի պար-
տութիւն մատնեցաւ յերեսաց նոցա: Զօրացան զինուք, զօ-
րօք և լցան աւարաւ բազմաւ, կոտորեցին զբանակս նո-
ցա. զինչս և զստացուածս նոցա 'ի գերութիւն վարեցին.
7 զմեհեանս աւերեցին. զկուռս կործանեցին որ շինեալ էր
'ի վերայ սեղանոյն յԵրուսաղէմ, և զսրբութիւնն փակեցին
պարսպօք բարձրութեան որպէս զառաջինն, և ընդ նմին
զքաղաքն Բեթսուր: 8 Եւ եղև իբրև լուաւ զբանս զայս թա-
գաւորն, հիացա՛ւ զարմացա՛ւ թմբրեցա՛ւ՝ և խռովեցա՛ւ յոյժ.
անկա՛ւ 'ի մահիճս իւր և հիւանդացաւ, զի ո՛չ կատարե-
ցաւ խորհուրդ հրամանի նորա: 9 Եւ անդ դնէր նա բազում
աւուրս, զի նորոգեցան 'ի վերայ նորա տրտմութիւնք բա-
զումք: Ած զմտաւ՝ թէ մեռանիմ. 10 կոչեա՛ց զամենայն բա-
րեկամս իւր՝ և ասէ ցնոսա. Քուն հատա՛ւ յերեսաց իմոց.
պախեալ եմ 'ի սիրտ իմ հոգոց իմոց: 11 Խօսեցա՛յ ընդ սրտի
իմում և ասեմ. Յո՛ր վայր նեղութեանց հասանես, և խռո-
վութեան բազմի, յորում այժմիկ պաշարեալ կամ. զի քաղցր
և բարերար և սիրելի՛ էի զօրաց իմոց: 12 Արդ՝ յո՛ւշ եղեն
ինձ չարիքն այն՝ զոր գործեցի ես յԵրուսաղէմ, և առի ես
զամենայն սպասն զայն զոսկւոյ և զարծաթոյ, և զօ՛րս ևս
գումարեցի տարապարտուց 'ի վերայ նոցա ջնջե՛լ զնոսա:
13 Արդ գիտե՛մ եթէ վասն այսորիկ գտին զիս չարիքս այս
ամենայն, և կորնչիմ աւասիկ տրտմութեամբ յօտա՛ր երկ-
րի: 14 Եւ կոչեա՛ց նա զՓիլի՛պպոս՝ մի 'ի բարեկամաց անտի
իւրոց, կացո՛յց զնա 'ի վերայ ամենայն թագաւորութեան
իւրոյ. 15 և ետ ցնա թա՛գ և պատմուճան՝ և զմատանին
զիւր, ածե՛լ զորդի իւր զԱնտիոքոս, սնուցանե՛լ և յիւր տե-
ղի թագաւորեցուցանել զնա: 16 Եւ մեռա՛ւ անդ՝ Անտիոքոս
արքայ, յամին հարիւրորդի քառասներորդի իններորդի:
17 Ազդ եղև Լիւսիայ եթէ մեռա՛ւ արքայ՝ և կացոյց թա- ԺԱ
գաւոր զորդի իւր Անտիոքոս, և ե՛դ անուն նմա Հորա-
մոյն Անտիոքոս: 18 Եւ որ 'ի միջնաբերդին էին արգել-
եալք՝ որ նեղէին զԻսրայէլ, և շուրջ զսրբութեամբն խնդրէ-
ին զչարիս համապազ, և զօրութիւն էին նոքա հեթանո-
սացն. 19 խորհեցան քաղաքացիքն ջնջել զնոսա: Եւ իբրև
ժողովեաց զամենայն ժողովս զօրացն, 20 և եկին նստան
շուրջ զնոքօք. և ժողովեցան 'ի մի վայր, և պաշարեցին
զնա: Յամին հարիւրորդի յիսներորդի, շինեցին պատուարս
և նետակալս և մեքենայս բազումս: 21 Եւ եկին ելին նոքա
յարգելանէ անտի, և կցեցան յարս անօրէնս յԻսրայէլացւոց
անտի. 22 և գնացին նոքա առ արքայն և ասեն. Մինչև յե՞րբ
ո՛չ արասցես դու զդատաստանն, և զվրէժ խնդրեսցես եղ-
բարցն մերոց. 23 մեք հաւանեալ եմք ծառայել հօր քում, և
երթալ զհետ հրամանաց նորա: 24 Եւ նստէին զնովաւ որդիք
ժողովրդեան մերոյ, վասն այսորիկ օտարանային բազումք
'ի մէնջ. բայց զոր գտանէին 'ի մէնջ՝ մահո՛ւ մեռուցանէին,
և ժառանգութիւնք մեր 'ի յափշտակութիւն մատնէին: 25 Եւ
ո՛չ 'ի մեզ միայն ձե՛ռս մխեցին, այլ և յամենայն սահմանս
իւրեանց: 26 Եւ այժմ եկեալ պաշարեալ շուրջ զմեւք, և ա-
ւադիկ եկեալ փակեալ պաշարեալ պահեն զմիջնաբերդն
Երուսաղեմի առնուլ զնա, և զսրբութիւնն. և զԲեթսովրա
ամրացուցին: 27 Եւ եթէ ո՛չ վա՛ղ աճապարեսջիք՝ և՛ս մեծա-

---

46 Ոմանք. Եւ եկին հասին նոքա 'ի դուռն: 47 Ոմանք. Եւ զբազմութիւն զբանակացն: 48 Ոսկան. Եւ ո՛չ ինչ մեղիցէ քեզ: 50 Ոսկան. Յիւրաքանչիւր տեղւոջէ: 52 Յօրինակին պակասէր. Եւ անցին նոքա ընդ: 53 Ոմանք. Մխիթարել զամենեսին: 54 Ոմանք. Անդրէն 'ի տեղիս, կամ 'ի տեղւոջ իւրեանց: 55 Ոսկան. Էին Յուդա և Յօնաթան: 60 Յօրինակին. 'Ի նոցանէ արք արք Ս: Ոմանք. Եւ եղև կործանումն: 61 Ոմանք. Թէ և մեք իբրև: 63 Ոմանք. Եւ եղբարք նորա: Այլք. Զանուն նորա: 65 Ոմանք. Շուրջ ուր գտանէր: 68 Ոմանք. 'Ի գերութիւն վարէր:

6.1 Ոսկան. Գնայր ընդ վերնա″: Յօրինակին. Եթէ է 'ի քաղաք մի: 2 Ոսկան. Զորս թողեալ էր: Ոմանք. Որ թագաւորեաց նա նախ 'ի: 5 Ոմանք. Որ երևեալ էին յերկիրն: 7 Ոմանք. Որպէս էր առաջինն: 8 Ոմանք. Լուաւ զայն բանս թագաւորն: 10 Ոմանք. Պահեալ եմ 'ի սիրտ իմ: 11 Ոսկան. Եւ խռովութեանց բազմաց: 14 Ոսկան. ԶՓիլիպպոս զմի 'ի բա″: 15 Ոմանք. Եւ ետ նոցա թագ: 16 Այլք. Քառասներորդի ինն″: 17 Օրինակ մի. Հորամոյն Անտիոքոս: 24 Այլք. Բայց զոր գտա″... մահու մեռանէին: Ո–ք Ոսկան. Բայց որք: 25 Ոմանք. Եւ ո՛չ 'ի մեզ մի՝ մեզ միայն ձեռամխեցին: 26 Ոմանք. Պաշարեալ շուրջ զմեզ:

մեծ ինչ քան զայս գործիցեն, և դուք զառաջս ո՛չ կարի-
ցէք ունել: [28]Իբրև զայն լուաւ թագաւորն՝ բարկացաւ յոյժ,
հրամայեաց կոչել զբարեկամս իւր, և զիշխանս որ 'ի վե-
րայ զօրացն էին: [29]Եւ յայլմէ թագաւորութենէ, և յայլոց
կղզեաց եկին առ նա զօրք բազումք 'ի վարձու: [30]Եւ էր թիւ
զօրաց նորա հարիւր հազար ասպա՛ր 'ի ձեռին տիգաւոր
հետևակ, և քսան հազար հեծեալ սպառազէն, երեսուն և
երկու փիղք վառեալք երիվարիկք: [31]Եւ եկին անցին ընդ
Եդոմ. ճակատեցան պատեցին զԲեթսուրի քաղաք, և մա՛րտ
պատերազմի եդին շուրջ զնովաւ աւուրս բազումս: Կազմե-
ցին շուրջ զմանգղիոնս և մենքենայս: Եւ ելին 'ի քաղաքէ
անտի, այրեցին զմենքենայսն, և մա՛րտ եդին ընդ նոսա
քաջութեամբ: [32]Չուեա՛ց խաղաց գնաց Յուդա 'ի միջնա-
բերդ ամրոցէ անտի, և եկն բանակեցաւ 'ի Բեթսակարիա,
դէմ յանդիման բանակի արքային: [33]Կանխեա՛ց ընդ առա-
ւօտն թագաւորն, ա՛ռ զբանակն՝ տարա՛ւ բանակեցոյց 'ի
միջոյ անտի ըստ ճանապարհին Բեթսակարիա. և զզօրսն
սփռեա՛ց ճակատեցոյց 'ի մա՛րտ պատերազմի. փո՛ղ հա-
րին, [34]կազմեցին պատրաստեցին զփիղսն՝ ճաշակեցուցին
յարիւն խաղողոյ, 'ի զմռուռս և 'ի գինիս: [35]Եւ կարգեցան
բաշխեցին 'ի գունդս գունդս. և կարգեցին առ փի՛ղ
փիղ հազա՛ր հազա՛ր այր սպառազէն. և պահապան գլուխ
գնդիցն հինգ հազար հեծեալ վառեալ նժոյգ 'ի ձեռն
պաշտպան գնդիցն. [36]զի ուր և կայցեն գազանքն՝ կայցեն
և նոքա. և ուր և գնայցեն՝ գնայցեն և նոքա: [37]Եւ վանդա-
կակապ մարտկոցս մենքենայիւք 'ի վերայ փղացն կազմե-
ցին, և զփղապանն 'ի վերայ գլխոյն նստուցին. [38]և զայլ
այրուձին յա՛ջ և յահեակ թև՛ս գնդին կազմեցին: [39]Իբ-
րև անտի արեգակն ծա՛յրս արձակէր, առ հասարակ 'ի
գրահաւոր պատենազէն պղնձապատ վահանացն նշոյլքն
զլերամբքն փայլատակէին, և ճառագայթք հատանէին իբ-
րև 'ի փայլատակմանց հրոյ: [40]Եւ երկայնէր ճակատն, զեղո՛յր
որ զբարձամբք լերանցն, որ զձորովք և զխորովք և
զդաշտիւք. [41]և խաղային յառա՛ջ՝ առ հասարակ կարգեալք
և կազմեալք. միաբան շարժէին առ հասարակ ամենեքին
որ լսէին զձայն բարբառոյ բազմութեանն, զշաչիւն զինու,
զշառաչիւն զերիվարացն թնդիւն, զոտնաձայն վահանաւոր
վառելոցն: [42]Եկն եհա՛ս Յուդա իւրով գնդաւն, կարգեցա՛ւ
կազմեցա՛ւ ճակատեցա՛ւ պատրաստեցա՛ւ, յարձակեցաւ, 'ի
դիմի՛ հարաւ գնդի թագաւորին. յա՛յնմ տեղւոջ յանդիման
թագաւորին՝ վեց հարիւր հեծեալ սպառազէն դիթաւա՛լ կա-
ցուցանէր յանդիման թագաւորին. [43]յա՛յնմ վայրի դէտ ա՛կն
'ի վե՛ր ամբառնայր: Եղիազա՛ր Աւարան տեսանէր մի 'ի
գազանաց անտի վառեա՛լ զարդարեալ, 'ի զէն արքունի
վառեալ՝ և նշանս արձակեալ, համարեցաւ թէ արքա՛յն իսկ
'ի նմին իցէ: [44]Յարձակեցաւ 'ի վերայ գնդին՝ յա՛ջ յահեակ
կոտորեաց, չոգա՛ւ մինչև եհաս 'ի փի՛ղ անդր նշանաւոր,
զէ՛ն վերացոյց, [45]և եմուտ 'ի ներքոյ, եհա՛ր՝ և անդէն կոր-
ծանեաց. [46]և էջ նստաւ փիղն 'ի վերայ՝ և զնա անդէն
ճմլեաց: [47]Նոքա իբրև տեսին զզօրութիւն զօրաց թագաւո-
րին՝ խո՛յս ետուն 'ի նոցանէ: [48]Սակայն յոր կողմ և գա-
յին, ընդ առա՛ջ լինէին նոցա գունդքն արքունի, մինչև
եկին 'ի կողմանս Երուսաղեմի: Եւ եկն արքայն և բա-
նակեցան 'ի Հրէաստանի, և 'ի լեառնն Սիոն: [49]Եւ խօ-
սեցաւ նա 'ի հաշտութիւն խաղաղութեան Բեթսուրի քա-
ղաքին. և ելին սփռեցան նոքա 'ի քաղաքէ անտի, զի
ո՛չ գոյին նոցա անդ համբարք. զի բազում ժամանակաց
արգելեալ պաշարեալ էին. և ամն իսկ ընդ աշխարհն շա-
բա՛թ դիպեցաւ: [50]Եւ ա՛ռ թագաւորն զԲեթսուրի քաղաք, և
հրամայեաց զզօրն 'ի ներքս տանել պահապան քաղաքին:
[51]Եւ ինքն պաշարեալ պահէր զսուրբ քաղաքն աւուրս բա-
զումս: Եւ շուրջ զնովաւ կանգնէին մանգղիոնս և մենքե-
նայս, հրացանս և քարընկէցս՝ ումբաքարս, և բալիստր, նե-
տաձիգ աշտարակս, և աշտարակս պարսաւորաց: [52]Դար-
ձեալ և նոքա 'ի քաղաքէ անտի սկսան կազմել մենքենայս
առ մենքենայս նոցա մա՛րտ եդեալ կռուէին աւուրս բա-
զումս. [53]բայց համբար ինչ ո՛չ գտանէին. զի այն ամ եւթն-
երորդ էր ընդ երկիրն, զի գաղթկանք աշխարհին սպա-
ռեցին զհամբարսն մթերեալս: [54]Մնացեալ էին սակաւք 'ի
սուրբս անդ. զի սփռեալ էին ընդ իւրաքանչիւր տեղիս, զի
սո՛վ սաստկացեա՛լ էր 'ի վերայ նոցա. և ցրուեցան յիւ-
րաքանչիւր տեղիս: [55]Իբրև լուաւ Լիւսի՝ եթէ Փիլիպպոս ո-
րում հրամայեաց ինքնին Անտիոքոս սնուցանել զորդի իւր
զԱնտիոքոս, զի կացուսցէ զնա արքայ. [56]իբրև դարձաւ նա
'ի Պարսից և 'ի Պարթևաց, եթէ զօրքն ամենայն 'ի նա
հատան. և ինքն կամի հասանել 'ի վերայ իրաց աշխարհին:
[57]Եկն՝ և ասէ նա ցարքայն և ցամենայն մեծամեծս զօրացն.
Նեղին զօրքս հանապազ, համբարք նուազեալ են, և կե-
րակուր կարճեալ են. և տեղիդ յորոյ վերայ պատերազմդ
է՝ ամո՛ւր է և անհնարին է, և գործ թագաւորութեան 'ի
մեզ հասեալ է: [58]Արդ եկա՛յք 'ի հաշտութիւն խօսեցարուք,
դաշինս կռեսցուք, խաղաղութիւն արասցուք ընդ ա՛րս ընդ
ազգիդ այդմիկ. [59]բանս հաստատեսցուք մեք ընդ նոսա.
կա՛լ նոցա յիւրաքանչիւր օրէնս իբրև զառաջինն. զի վասն
օրինացն իսկ իւրեանց յորում խռովեցաք զնոսա՝ բարկա-
ցան նոքա 'ի մէնջ, 'ի վէ՛գ եկին՝ և արարին զայս ամենայն:
[60]Հաճո՛յ թուեցաւ բանն առաջի թագաւորին և իշխանաց
նորա. և արձակեաց նա հրեշտակս խօսել 'ի խաղաղու-
թիւն: Եւ ընկալան: [61]Երդուան երդուաւ նոցա թագաւորն
և իշխանքն. և ապա նոքա ելին յամրոցաց անտի: [62]Եւ
եմուտ թագաւորն 'ի լեառն Սիոն, և ետես զամրութիւն
տեղւոյն. և ստեա՛ց զերդումն զոր երդուաւ. հրաման ետ
քակել շուրջանակի զպարիսպս նորա: [63]Չո՛ւ արար վաղ-
վաղակի 'ի կողմանս Անտիոքայ, և եգիտ նա զՓիլիպպոս
տիրեալ քաղաքին. մարտեաւ ընդ նմա, և ա՛ռ զքաղաքն
բռնութեամբ:
7 Յամին հարիւրորդի յիսներորդի յառաջնում, համբար- ԺԲ
ձաւ Դեմետրիոս Սելևկեան 'ի Հռոմ քաղաքէ. և ե՛կն նա
սակաւ զօրօք 'ի քաղաքն ծովեզերեայ, և թագաւորեաց
նա 'ի նմա: [2]Եւ եղև իբրև մտանել կամէր Անտիոքոս 'ի
տուն թագաւորութեան հարց իւրոց. շո՛ւրջ եղեն պատեցին
զնա զօրք բազումք, ձերբակա՛լ արարին զԼիւսի, և զԱն-
տիոքոս կալեալ կապեալ ածին առ Դեմետր: [3]Իբրև ցուցին
Դեմետրի զբանսն, հրաման ետ՝ և ասէ. Բնա՛ւ զերեսս նո-
ցա ինձ յակն մի՛ արկանէք: [4]Եւ առին արտաքսեալ ար-
տաքս զօրօքն, և տարան սպանին զնոսա: Եւ նստաւ յա-
թոռ թագաւորութեանն Դեմետր: [5]Եւ եկին առաջի նորա
արք անօրէնք ամբարիշտք յազգացն Իսրայէլի. և Յակի-
մոս գլո՛ւխ էր նոցա, զի ինքն իսկ անսայր քահանայու-
թեանն: [6]Ամբաստան եղեն զժողովրդենէն, և ասեն. Կորո՛յս
սպառեաց Յուդա զմեզ զեղբարս իւր, և զքո զբարեկամս,
և զմեզ ցրուեաց յերկրէ անտի: [7]Արդ առաքեա՛ դու արս
հաւատարիմս որ եկեսցեն տեսցեն զչարչարանս ազգին,
և զսատակումն զոր հասոյց 'ի վերայ մեր. զի սատակ-
եա՛ց նա զերկիրն արքունի, և վշտացոյց զօգնականս նոցա:
[8]Եւ ընտրեա՛ց կայսր՝ զԲաքիդ սիրելի զարքայի՝ զիշխան
յայն կողմն գետոյն, իշխան մեծ հաւատարիմ յարքայու-
թեան իւրում. և արձակեցին զնա, [9]և զանօրէնն Յակիմոս
ընդ նմա. և յանձն արարին նմա զքահանայութիւնն. և ետ
հրաման խնդրել զվրէժ որդւոցն Իսրայէլի: [10]Չո՛ւ արար՝
խաղաց գնաց Բաքիդ. և հրեշտակս արձակեաց 'ի տեղւո-
ջէ առ Յուդա և առ եղբարս նորա՝ խօսել ընդ նոսա 'ի
խաղաղութիւն բանիւք նենգութեամբ: [11]Եւ նոքա ո՛չինչ ան-
սացին բանից նորա, զի տեսին զնա հասեալ զօրօք բազ-
մօք: [12]Սկսան ժողովել առ Բաքիդ և առ Յակիմոս ժողովք
դպրաց որ խնդրէին զիրաւունս: [13]Նախ Ասիդացիքն էին
յորդւոցն Իսրայէլի որ խնդրէին զխաղաղութիւն: [14]Զի ա՛յս-
պէս համարեցան եթէ այր քահանայ 'ի զաւակէ Ահարոնի
եկեալ է ընդ զօրսն, ո՛չ ինչ տացէ մեղանչել մեզ: [15]Եւ խօ-
սեցաւ ընդ նոսա բանս խաղաղութեամբ, և երդմնի՛ եղև
նոցա. եթէ ո՛չինչ տաց մեղանչել ձեզ. և ո՛չ բարեկամաց
ձերոց: [16]Եւ հաւատացին 'ի նա. և նա ա՛ռ 'ի նոցանէ
արս վաթսուն, և սպան յաւուր միում ըստ բանին որպէս

30 Ոմանք. Սպար 'ի ձեռն տեգաւոր: 31 Ոմանք. Անցին ընդ Եդոմ: 32 Այլք. Յամրոցէ անտի: 34 Այլք. 'Ի զմռուռս և 'ի գինի: 36 Ոմանք. Կայցեն նոքա. ուր և գնայցեն գնասցեն նոքա: 39 Ոմանք. Ծայր արձակէր... 'ի վահանացն... իբրև փայլատակմանց: 40 Ոմանք. Եւ զեղոյր զբարձամբք: 41 Ոմանք. Թնդիւն և զոտնաձայն: 42 Ոմանք. Դիաթաւալ կացուցանէր: (43) Յայնմ վայրի դէտակն 'ի վեր բառնայր Եղիազար Աւա՛": 44 Ոմանք. Յաջ յահեակ կոտորեաց մինչև եհաս 'ի փիղ անդ նշա՛": 51 Ոմանք. Եւ նետաձիգ աշտարակս աշտարակս պարսպաւորաց:

52 Ոմանք. Առ մեքենայս նորա: 53 Այլք. Զի գաղթականք աշ": 55 Ոսկան. Իբրև լուաւ Լիւսիաս: 56 'Ի լուս. Զօրքն ամենայն 'ի նա հարան. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 58 Այլք. 'Ի հաշտութիւն խօսեսցուք: Ոսկան. Ընդ արս ազգիդ այդմիկ: 62 Ոմանք. Եւ ստեաց նա զերդումնն զոր: 7.2 Ոմանք. Կապեալ ածէին առ Դե": 3 Ոմանք. Զերեսս նորա ինձ: 4 Այլք. Արտաքս զօրքն, և տա": 10 Ոսկան յաւելու. 'Ի տեղւոջէ անտի առ Յուդա, և առ: 11 'Ի լուս. Բանից նոցա. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 13 Ոմանք. Էին յորդիսն

և գրեալ է. 17 Ընկեցին զմարմինս սրբոց քոց Թռչնոց երկ-
նից, և Հեղին զարիւնս նոցա շուրջ զԵրուսաղեմաւ, և ո՛չըք
էր որ Թաղէր զնոսա: 18 Եւ անկաւ ա՛հ և երկեւղ 'ի վերայ
ժողովրդեանն, զի ասացին Թէ չի՛ք 'ի նոսա իրաւունք և
ո՛չ ճշմարտութիւն. զի անցին ըստ Հաստատութիւն, և ըստ
երդումն զոր երդուան: 19 Չուեա՛ց Բաքիդ յԵրուսաղեմէ, և
եկն բանակեցաւ 'ի ԲերաէԹ. և առաքեաց կալաւ նա զբա-
զումս 'ի նոցանէ՝ յարանցն ինքնեկաց, և զբազումս 'ի ժո-
ղովրդենէ անտի. և Հրամայեաց փողոտել 'ի ջրՀո՛ր անդր 'ի
ներքս: 20 Եւ եդ զաշխարՀն 'ի ձեռն Յակիմայ. և եԹող առ
Յակիմայ զօրս բազումս օգնական նմա. և գնաց Բաքիդ
առ արքայ: 21 Եւ ջանայր Յակիմոս վասն քաՀանայապե-
տուԹեան. 22 և ժողովեցան առ նա ամենայն խռովիչք ժո-
ղովրդեանն, և յաղԹաՀարեցին զերկիրն Յուդայ. և արա-
րին Հարուածս մեծամեծս 'ի վերայ Իսրայէլի: 23 Իբրև ետես
Յուդա զչարիսն զոր արար Յակիմոս, և որ ընդ նմա էին
որդիքն Իսրայէլի. 24 յարձակեցա՛ւ նա 'ի վերայ Հրէաստա-
նի շուրջանակի զսաՀմանօք նորա, և արար վրէժխնդրու-
Թիւն 'ի վերայ արանցն որ ինքնակամ գնացեալ էին 'ի
ՀեԹանոսս. և կարճեցան նոքա այնուՀետև դառնա՛լ անդ-
րէն յերկիրն Հրէաստանի: 25 Իբրև ետես Յակիմոս՝ եԹէ
միւսանգա՛մ ևս զօրացաւ Յուդա, և գիտաց Թէ ո՛չ կարեմ
ժո՛յժ ունել նմա, դարձա՛ւ անդրէն առ Թագաւորն չարախօս
լինել զնմանէ: 26 Եւ առաքեաց Թագաւորն զՆիկանովրա, մի
'ի փառաւոր յիշխանաց անտի որ մանաւանդ ատեայր և
ԹշնամուԹեամբ կայր ընդ կողմն Իսրայէլի. պատուէր ետ
նմա զի ջնջեսցէ զժողովուրդն 'ի տեղւոջէն: 27 Եւ եկն ե-
Հաս Նիկանովր զօրօք բազմօք. և առաքեաց նա առ Յու-
դայ և առ եղբարս նորա բանս խաղաղուԹեան նենգու-
Թեամբ: 28 Մի՛ եղիցի կռիւ ընդ իս և ընդ ձեզ. եկի՛ց ես
սակաւ արամբք տեսանել զերեսս ձեր խաղաղուԹեամբ:
29 Եւ եկն առ Յուդա, և ողջո՛յն ետուն միմեանց խաղաղու-
Թեամբ. և զօրքն ճակատեալ պատրաստեալ էին յարձակել
և ձերբակալ առնել զՅուդա: 30 Իբրև ա՛զդ եղև բանն այն
առ Յուդա, եԹէ նենգուԹեամբ եկեալ է զնմանէ, խռովեցա՛ւ
խորշեցաւ մերժեցաւ Հեռացաւ՝ և այլ ո՛չ կամէր տեսա-
նել զերեսս նորա: 31 Իբրև ետես Նիկանովր եԹէ յայտնեցաւ
խորՀուրդս նմա, խաղա՛ց պատաՀել նմա պատերազմաւ 'ի
կողմանս Փարսաղայ: 32 Եւ անկաւ 'ի կողմանցն Նիկանով-
րայ իբրև արք Հի՛նգ Հարիւր, և փախստեա՛յ եղեն 'ի քա-
ղաքն ԴաւիԹի: 33 Եւ յետ այսց բանից՝ եկն ել Նիկանովր 'ի
լեառն Սիոն: Եւ եկին ելին 'ի քաՀանայից անտի սրբոց ընդ
նմա. ողջո՛յն տալ նմա խաղաղուԹեամբ, և ցուցանել նմա
զողջակէզս պատարագաց զոր մատուցանէին Հանապա-
զորդ վասն կենաց Թագաւորին: 34 Նա անարգեա՛ց զնոսա,
և ծիծաղէր զնոքօք. և պղծեաց զնոսա բանիւք Հպարտու-
Թեամբ և ամբարտաւանուԹեամբ. 35 և եՀար զնոսա. և ասէ
ցասմամբ. ԵԹէ ո՛չ 'ի ձեռս իմ տաջիք զՅուդա գնդաւն իւ-
րով, այժմ աՀա է՛ որպէս իցէ. բայց Թէ ընդ սոյն դարձայց
խաղաղուԹեամբ, զա՛յն տաճար Հրով դատեցայց, և 'ի ձե՛նջ
վրէժ խնդրեցից: Եւ անց գնաց սրտմտուԹեամբ և մեծաւ
բարկուԹեամբ: 36 Եւ քաՀանայքն՝ եկին մտին կացին յան-
դիման սեղանոյն և տաճարին, սկսան լա՛լ և ասեն. 37 Դո՛ւ
ընտրեցեր զտաճարս քո զայս՝ կոչել զանուն սուրբ քո 'ի
վերայ սորա. զի լիցի դա տուն ուխտից խնդրուածոց ժո-
ղովրդեան քոյ: 38 Դու խնդրեա՛ զվրէժ յառնէ այտի յայդ-
մանէ, և 'ի բանակէ դորա, և անկցին ինքեանք 'ի սուր
իւրեանց. յիշեա՛ դու զՀայՀոյուԹիւնս նոցա, և մի՛ տար նո-
ցա դադար: 39 Եւ ել Նիկանովր յԵրուսաղեմէ, բանակեցաւ
'ի ԲեԹսորոն. ընդ առաջ եղեն նմա զօրք Ասորեստան-
եայք: 40 Եւ Յուդա ինքն բանակեալ էր յԱդասա երիւք Հա-
զար արամբք. սկսաւ կալ յաղօԹս՝ և ասել. 41 Յա՛յնժամ որ
'ի Թագաւորէ անտի եկեալ ՀայՀոյէին, ել Հրեշտակ քո և
եՀա՛ր զնոսա 'ի Հարիւր ուԹսուն և Հինգ Հազար, և անդէն
սատակեաց, ըստ ա՛յնմ օրինակի սատակեա՛ դու զբանակս
զայս այսօր, և գիտասցեն մնացեալքն Թէ 'ի նանի՛ր խօ-
սեցաւ 'ի վերայ սրբուԹեան քոյ. և դատեա՛ դու զնա ըստ
իւրում չարուԹեանն: 42 Հասին ճակատքն երկոքեան 'ի միմ-
եանս, և ընդ միմեանս բախեցան յաւուրն երեքտասան-
երորդի յամսեանն Ադարայ. 'ի պարտուԹիւն մատնեցաւ,
խորտակեցաւ գունդն Նիկանովրայ, և անկաւ նախ ինքն
'ի սուր սուսերի 'ի մէջ երկուց ճակատուցն: 43 Իբրև ե-
տես գունդն եԹէ անկաւ Նիկանովր՝ զէնընկէ՛ց լինէին, 'ի
փախուստ դառնային: 45 Սոքա զՀետ երԹային նոցա օր մի
յԱդասայ մինչև եկին Հասին յԱզերա. և Հարկանէին զփողս
նշանաց զՀետ նոցա. 46 և ելանէին յամենայն քաղաքաց ան-
տի Հրէաստանի շուրջանակի, և կրճատէին զնոսա: Դար-
ձեալ անդրէն առ միմեանս միմեանց ընդդէմ 'ի մի վայր
ժողովէին. և անկան յայնմ աւուր ամենեքին 'ի սուր սու-
սերի, և ո՛չ մնաց 'ի նոցանէ և ո՛չ մի: 47 Եւ եկին խառնեցան
ընդ աւա՛ր ընդ կապուտ՝ ընդ զէն՝ ընդ գանձ ընդ կաՀ բա-
նակին: Եւ զգլուխն Նիկանովրայ աջով ձեռամբն Հանդերձ
զոր իշխեաց ձգել նա ՀպարտուԹեամբ 'ի տաճար անդր, և
բերին պրկեցին զնա յանդիման Երուսաղեմի: 48 Եւ ուրա՛խ
եղև ժողովուրդն յոյժ: Եւ արարին զօրն զայն տարեկան
մեծ. 49 և կարգեցին ամ յամէ զօրն զայն տօ՛ն տարեկանաց,
զերեքտասաներորդ ամսոյն Ադարայ: 50 Եւ լռեաց երկիրն
Յուդայ աւուրս քանի՛ մի:
8 Իբրև լուաւ Յուդա զանուն Հռովմայեցւոց, եԹէ են նո- ԺԳ
քա Հզօրք զօրուԹեամբ իւրեանց. և նոցա բարւո՛ք Թուի
Թէ ոք Թիկունս առնէ զնոսա, և դաշնաւո՛ր լինի նոցա. և
զի զօրացեալ են զօրուԹեամբ 'ի վերայ երկրի: 2 Եւ վասն
մարտից պատերազմի, զի Հարկանէին քաջուԹեամբ իւր-
եանց զկողմանս Գաղատացւոց, զի զօրացան 'ի վերայ նո-
ցա, և կացուցին զնոսա 'ի Հարկի: 3 Եւ որ ինչ միանգամ
արարին նոքա ընդ կողմանս Սպանիացւոց. և Թափեցին
'ի նոցանէ զբովսն ուստի ոսկին և արծաԹն Հատանի. և
ըմբռնեցին նոքա զտեղիսն զայն ամենայն խորՀրդովք իւր-
եանց, և երկայնմտուԹեամբ իւրեանց. զի էր տեղին կարի
բացարձա՛կ 'ի նոցանէ. 4 և 'ի Թագաւորաց անտի որ եկեալ
էին 'ի վերայ նոցա 'ի ծագաց երկրի մինչև Հարի՛ն զնոսա:
Եւ Հարին զնոսա 'ի Հարուածս մեծամեծս, և ջնջեցին զնո-
սա, և զմնացորդսն 'ի Հարկի կացուցին տա՛լ նոցա Հարկ
ամ յամէ: 5 Եւ զՓիլիպպոս, և զարքայն Կիտէացւոց որ յա-
րուցեալ էին 'ի վերայ նոցա, սատակեցին զնոսա 'ի պա-
տերազմի և յաղԹեցին նոցա: 6 Եւ զԱնտիոքոս մեծ արքայն
Ասիացւոց, որ եկեալ էր 'ի վերայ նոցա մեծաւ պատե-
րազմաւ, ընդ իւր ունէր Հարիւր քսան փիղ, և կառս և
երիվարս բազում յոյժ, և պարտեցա՛ւ 'ի նոցանէ. 7 զի ձեր-
բակա՛լ արարին զնա կենդանւոյն, և կացուցին զնա 'ի տե-
ղի մի Հա՛րկ Հարկանել: 8 Եւ զԹագաւորս որ ըստ նմանէ՛ էին
տա՛լ պատանդս և գրաւականս. և զաշխարՀն Հնդկաց, և
ՊարԹևաց, և Լիդացւոց, զընտիր ընտի՛ր գաւառաց նո-
ցա. և առին զա՛յնս և 'ի ձե՛ռս ետուն Եւմենեայ արքա-
յի: 9 Իբրև զա՛յն ևս լուան եԹէ Յոյնք խորՀեցան գա՛լ սա-
տակել զնոսա. և իբրև ա՛զդ եղև բանն նոցա. 10 արձա-
կեցին մի 'ի զօրավարաց անտի, և եկն եՀար սատակ-
եաց զնոսա մեծաւ պատերազմաւ, և արկին 'ի նոցա-
նէ 'ի սուր իւրեանց վիրաւորս բազումս. 'ի գերուԹեան
վարեցին զկանայս և զորդիս նոցա. յաւարի առին զինչս
և զստացուածս նոցա: Կալա՛ն զերկիրն 'ի ծառայուԹեան.
զամուրսն քակեցին, զաշխարՀն 'ի Հարկի ծառայուԹեան
կացուցին մինչև յօրս յայս: 11 Եւ զա՛յլ ԹագաւորուԹիւնսն
և զկղզիսն՝ որ խլրտէին՝ սատակեցին և 'ի ծառայու-
Թեան կացուցին: 12 Բայց ընդ բարեկամս իւրեանց՝ և որ
Թիկունս առնէ զնոսա, ՀաստատուԹեամբ սէր առնէր ընդ
նոսա: Եւ Հզօրացան նոքա 'ի վերայ ամենայն Թագա-
ւորուԹեանց՝ որ մե՛րձ էին և որ Հեռի՛ էին. և որ մի-
անգամ լսէին զանուն նոցա՝ երկնչէին 'ի նոցանէ: 13 Ում

---

Իսրայէլի որ:

17 Ոմանք. Զարիւն նոցա շուրջ: 19 Ոմանք. Եւ եկն բնակեցաւ 'ի ԲերաէԹ: 20 Յօրինակին յայսմ վայրի միայն՝ Բաքիդ-ն վրիպա-կաւ- Գրի՝ Քաբիդ: 24 Յօրինակին. Դառնալ յերկրէն Հրէաստանի: 25 Ոսկան. Թէ ո՛չ կարէ ժոյժ ունիլ: 26 Ոմանք. Եւ ԹշնամուԹեամբ կեայր... զժողովուրդսն 'ի տեղւոջէ: 27 Ոմանք. Առ եղբարս իւր: 28 Ոմանք. Ընդ իս և ընդ քեզ: 31 Ոսկան. ԽորՀուրդն նմա: 32 Ոսկան. Եւ անկան 'ի կողմանցն: 33 Ոմանք. Հանապազ վասն կենաց Թա՛: 35 Ոմանք. ԱՀա է որպէս և իցէ, բայց եԹէ ընդ այն դարձայց... և անց գնաց տրտմուԹեամբ և մե՛: 36 Ոմանք. Սկսան լալ և ասել: 37 Ոմանք. Զայս սուրբ, կոչել զանուն քո սուրբ: 40 Այլք. Երիւք Հազարօք ար՛:

---

41 Ոսկան յաւելու. 'Ի Թագաւորէ անտի Սենեքերիմայ եկեալ: 45 Ոմանք. Մինչ եկին Հասին յա՛... փողս նշանակաց զՀետ նոցա: 47 Ոմանք. Եւ զգլուխ Նիկանովրայ աջու ձե՛: 8.5 Այլք. Եւ զարքայն Կինացւոց: 6 Ոմանք. Եւ պարտեցաւ նա 'ի նոցանէ: 8 Ոմանք. Տալ պանտանդս և գրա՛... և առին զայն՝ և 'ի: 10 Ոմանք. Մինչև ցօրս յայս: 12 Ոմանք. Եւ որ Թիկունս առնէր զնոսա: Ոսկան. Սէր առնէին ընդ նոսա:

կամէին տային զթագաւորութիւն, զո կամէին՝ Հանէին 'ի
տէրութենէ. և բարձրացան յոյժ: [14]Եւ 'ի վերայ այսր ա-
մենայնի ո՛չ ոք 'ի նոցանէ յանձն առ թագ առնուլ՝ և
ծիրանիս արկանել՝ զի Հաստատեսցի տէրութիւնն: [15]Այլ
տո՛ւն խորհրդոց շինեցին, և Հանապա՛զ օր երեք Հարիւր
և քսան այր 'ի խորհո՛ւրդ մտանէին վասն զօրաց՝ զի
զաշխարհն շէն կալցին: [16]Եւ մի մի այր 'ի նոցանէն որ
Հաւատարիմ էր իշխան, գլո՛ւխ կացուցանէին տարւոյն, զի
տիրեսցէ 'ի վերայ ամենայն երկրի նոցա, և ամենեքեան
Հնազանդութեամբ լսէին միում. և ո՛չ ինչ գոյր Հեռ և նա-
խանձ 'ի մէջ նոցա: [17]Ապա կարգեաց արս ընտիրս Յուդա
յիւրաքանչիւր գնդէ անտի. զԱպողեմոս զԱկկոսեան զորդի
Յովհաթանու, և զՅասոն զորդի Եղիազարու. և առաք-
եաց զնոսա 'ի Հռոմ քաղաք, խնդրե՛լ 'ի նոցանէ զՀաշտու-
թիւն և թիկունս: [18]Եւ զի բարձցեն զլուծ 'ի պարանոցէ
նոցա. քանզի ծանրացուցեա՛լ էր յունաց զլուծ ծառայու-
թեան 'ի վերայ պարանոցին Իսրայէլացւոց: [19]Եւ գնացին
'ի կողմանս Հռոմայեցւոց: Եւ էր ճանապարհն մեծ. եկին
Հասին Հրեշտակքն, և յանդիման եղեն նոցա 'ի տաճա-
րին խորհրդոց. կացին 'ի մէջ, և սկսան տա՛լ զպատգամն:
[20]Յուդա Մակաբէ և եղբարք իւր, և ամենայն սպայ Հրէաս-
տանեայց. խօսել ընդ ձեզ 'ի Հաշտութիւն. առնել զձեզ թի-
կունս, և խնդրել 'ի ձէնջ խաղաղութիւն. զի և ձեզ ևս կամ
լիցի, գրել ձեզ զմեզ նիզակակիցս և բարեկամս: [21]Եւ Հա-
ճո՛յ թուեցաւ բանն առաջի նոցա: [22]Եւ ա՛յս այն պատճէն է
Հրովարտակի նոցա զոր գրեցին նոքա առ նոսա 'ի տախ-
տակս պղնձիս և առաքեցին յԵրուսաղէմ. և առ իւրեանս
թողին յիշատակ թիկանց և խաղաղութեան: [23]Խաղաղու-
թիւն և բարի՛ք լիցին ընդ Հրէաստան, և ընդ Հռոմայեց-
ւոց՝ ընդ ամենայն ընդ ծով և ընդ ցամաք. սուր և թշնա-
մի Հեռի՛ լիցի 'ի նոցանէ: [24]Ապա եթէ Հասցէ պատերազմ
նա՛խ 'ի վերայ Հռոմայեցւոց, կամ ուրեք բարեկամաց նո-
ցա՝ ընդ ամենայն տեղիս տէրութեան նոցա, [25]'ի թիկունս
վաղվաղակի Հասցէ գունդն Հրէաստանեայց, որպէս ժա-
մանակն ցուցանէ նոցա՝ մտադիւր սրտի մտօք: [26]Եւ 'ի
թշնամի ինչ մի՛ տացեն, և մի՛ ձեռնտու լիցին արծաթով
կամ ոսկւով՝ կամ զինու՝ կամ նաւօք: Այսպէս Հաճո՛յ թուե-
ցաւ Հռոմայեցւոց. զի պաՀեսցեն զպատուիրանդ զայդ ա-
ռանց կաշառոյ: [27]Սո՛յնպէս եթէ 'ի վերայ ազգին Հրէից
Հասանիցէ պատերազմ, 'ի թիկո՛ւնս վաղվաղակի Հասցեն
Հռոմայեցիք՝ միամտութեամբ սրտի մտօք. որպէս ժամա-
նակն նոցա ցուցանիցէ: [28]Եւ 'ի թշնամի ինչ ո՛չ տացեն,
ոսկի կամ արծաթ կամ զէն կամ նաւս. որպէս Հաճոյ թուե-
ցաւ Հռոմայեցւոց: ՊաՀեսցեն զպատուիրանս զայս առանց
նենգութեան: [29]Եւ ըստ բանիցս այսոցիկ ա՛յսպէս Հաստա-
տեցին Հռոմայեցիք ընդ գնդին Հրէից: [30]Ապա եթէ յետ
այդց բանից խորհուրդ ինչ 'ի մէջ մտցէ սոցա կամ նո-
ցա՝ Հանե՛լ կամ յաւելուլ, որ ինչ դէպն տացէ՝ կարգեսցեն
Հասարակ Հաւանութեամբ, և Հաստատո՛ւն կացցեն: [31]Եւ
վասն չարեաց արքային Դեմետրեայ որ Հասուցանէ նո-
ցա, գրեսցուք առ նա. գոգցուք. Ընդէ՞ր ծանրացուցանէք
զլուծ 'ի վերայ պարանոցի նիզակակից բարեկամաց մե-
րոց: [32]Զա՛յս գիտասջի՛ք՝ եթէ զքէն ամբաստան լիցին զոքա.
դատաստան յիրաւի կալցուք, մա՛րտ պատերազմի տացուք
ընդ քեզ, եթէ ընդ ծո՛վ իցէ՝ եթէ ընդ ցամաք:

9 Եւ ո՛չ ինչ լուաւ Դեմետր. զի անկեալ կործանեալ էր
Նիկանովր գնդաւն իւրով 'ի նոցանէ պատերազմաւ: Եւ նա
դարձեալ անդրէն կրկնեալ յղեա՛ց զԲաքիդ և զՅակիմոս,
և զյառաջակողմն թևոյն իւրոյ ընդ նոսա յերկրին Հրէ-
աստանի: [2]Եւ գնացին 'ի ճանապարհն Գաղգաղայ. և ե-
կին ճակատեցան 'ի Մեսաղովթ յերկիրն Արբեղացւոց, և
առին զնա, և սատակեցին անձինս բազումս մարդկան
'ի նմա: [3]Յամսեանն առաջնում յամին Հարիւրորդի յիսնե-
րորդի երրորդի, բանակեցան մերձ առ յԵրուսաղէմ: [4]Եւ
չուեցին գնացին Հասին 'ի Բերէթ քսան Հազար մնդաւոր
արամբք. և երկուք Հազարօք Հեծեալ սպառազինաւ: [5]Եւ
Յուդա էր բանակեալ յԵղիշա. և երեք Հազար սպառա-
զէն ընտիրք. [6]իբրև տեսին զամբոխ բազմութեան գնդին,
և երկեան յոյժ, և բազումք թօթափեցան 'ի նմանէ. և ո՛չոք
մնաց առ Յուդայի, բայց ութ Հարիւր Հեծեալ սպառազէն:
[7]Իբրև ետես Յուդա թէ թօթափեցան զօրքն 'ի նմանէ, և
պատերազմ նեղէր զնա, նեղեցաւ 'ի սիրտ իւր. զի ո՛չ էր
ժամանօղ միւսանգամ ժողովե՛լ զնոսա. լուծաւ լքաւ անկաւ:
[8]Սկսա՛ւ խօսել ընդ մնացեալսն և ասէ. Եկա՛յք Հարցուք 'ի
դիմի, թերևս կարասցուք կծանե՛լ ինչ 'ի նոցանէ: [9]Եւ ինքն
յարձակ յարձա՛կ խաղայր. և զօրքն մատուցեալ պաշարէ-
ին դարձուցանել անդրէն. սկսան խօսել ընդ նմա՝ և ա-
սեն. Այր դու՝ նոցա ինչ մեք ո՛չ կարեմք ստնանել. բայց
այժմ զանձն ապրեցուցանել ո՛ւշ դիցուք. Հապա դարձցուք
ժողովեսցուք զեղբարս մեր. ապա մարտիցուք. թէպէտ և
իցեմք սակաւք: [10]Պատասխանի ետ նոցա Յուդա՝ և ասէ.
Քա՛ւ լիցի ինձ առնել զիրսդ զայդ, 'ի փախո՛ւստ դառնալ
ինձ 'ի նոցանէ. եթէ Հասեալ իցէ ժամանակ մեր՝ մեռցո՛ւք
քաջութեամբ 'ի վերայ եղբարց մերոց, և ո՛չ խառնեսցուք
զանուն վատութեան մերոյ ընդ արիութիւնս քաջութեան:
[11]Եւ ելին զօրքն յիւրաքանչիւր բանակէ, և ճակատեցան
դէմ յանդիման միմեանց. երկո՛ւ գունդք լինէին՝ գունդքն
Բաքիդեան սպառազինաւ: Պարսաւորքն և աղեղնաւորքն
առաջի գնդին խաղային, և նաՀատակքն յառաջագոյն
խաղացեալ էին: [12]Բայց Բաքիդ յաջո՛ւմ թևի անդ ճեպէր
զզօրսն 'ի ձայն փողոյ տագնապաւ յառաջ մատուցանէր:
[13]Եւ գունդն Յուդայեան փո՛ղ Հարեալ 'ի վերայ յարձակեալ
գային, մինչև երկիրն շարժէր յամբոխ յաղաղակէ անտի
յերկոցունց կողմանց: Եւ եղև պատերազմն խառնեալ ան-
դադար, յառաւօտէ մինչև յերեկոյ: [14]Իբրև ետես Յուդա՝
եթէ Բաքիդ ընտիր ընտիր զօրօք յաջում թևի ա՛նդ է,
զընտիր ընտիր սպառազինաց յիւրմէ գնդէ անտի յառաջ
կոչէր, քաջալերէր և անդէն 'ի վերայ յարձակէր: [15]'Ի նմին
ժամանակի զաջակողմն թևին բեկանէր, և զձախուն ար-
կանէր. և անդստին առաջի արկեալ փախստեա՛յս տանէր
մինչև 'ի կողմանս վերինս Հազովտայ: [16]Եւ որ 'ի ձախա-
կողմն թևի անդ էին, իբրև տեսին թէ աջակողմն թևին
բեկաւ առաջի Յուդայեանց, գային խառնէին, և զՅուդայ
գնդաւն Հանդերձ 'ի մէջ արկանէին: [17]Յայնմ վայրի վի-
րաւորք յերկուց կողմանց անկեալ ընդ երկիր թաւալէին:
[18]Անդ անկանէր Յուդա՝ առաջին նաՀատակօքն. և որ
մնացեալ էին 'ի փախուստ դառնային: [19]Դարձան Յով-
նաթան և Շմաւոն եղբարքն երկոքին, բարձին զՅուդա,
տարան թաղեցին 'ի շիրիմս Հարց իւրեանց 'ի Մովդիիմ:
[20]Լացին կոծեցան որդիքն Իսրայէլի կո՛ծ մեծ. սո՛ւգ առին
աւուրս բազումս, և սկսան խօսել. [21]և ասեն. Զիա՛րդ ան-
կաւ կործանեցաւ Հզօրն փրկիչն Իսրայէլի: [22]Այլ ուրեք ու-
րեք մարտ՝ կամ ճակատ՝ կամ մղել պատերազմի, կամ
քաջութիւնս ինչ որ արարեա՛լ է Յուդայի՝ գրեցաւ իսկ ո՛չ
յայսմ մատենի. զի բազո՛ւմ էր կարի յոյժ:
[23]Եւ եղև յետ մաՀուանն Յուդայի՝ բրեցին անօրէնքն ԺԴ
շուրջ զսաՀմանօքն Իսրայէլացւոց, բուսան՝ բղխեցին, և
բազմացան որ գործէին զանօրէնութիւն: [24]Յաւուրսն յայ-
նոսիկ եղև սո՛վ մեծ, և ինքնակամ գնացին մարդիկն 'ի
նոսա. և աշխարՀն ձեռնտու էր 'ի նոսա: [25]Եւ ընտրեաց
Բաքիդ արս անօրէնս, և կացոյց իբրև տեարս 'ի վե-
րայ նոցա, [26]որ քննէին և խնդրէին և ածէին զբարեկամսն
Յուդայի առ Բաքիդ, և խնդրէին վրէժ 'ի նոցանէ,
տառապեցուցանէին և ա՛յպն առնէին. [27]և նեղէին և ծա-
ղր առնէին զԻսրայէլ. զի ո՛չ երբէք լեա՛լ էր այս յոր-
մէ Հետէ երևեցաւ մարգարէ: [28]Եւ ժողովեցան ամենայն
բարեկամքն Յուդայի, և չոգան առ Յովնաթան Ափուս՝ և
ասեն. [29]Եղբայր քո Յուդա մեռա՛ւ, և այր չի՛ք որ նման է
նմա ելանել ընդդէմ թշնամեաց, տա՛լ պատասխանի այդոցիկ
որ եկեալ թշնամութեամբ նեղեն զազգս մեր: [30]Այլ զքե՛զ

16 Ոսկան. Իշխան և գլուխ կա՛": 17 Ոմանք. Զեպողեմոս զԱ-
կոսեան: 19 Ոմանք. Լացին 'ի մէնջ, և սկսան: 20 Ոմանք. Եւ ա-
մենայն սպաՀ Հրէաս": 22 Ոսկան. Եւ այս է պատճէն Հրո՛": 23
Յօրինակին պակասէր. Ընդ ամենայն ընդ ծով և ընդ: 24 Ոմանք.
Կամ ումեք բարեկամաց նոցա: 25 Ոմանք. Վաղվաղակի Հասա-
նիցէ... ցուցանիցէ նոցա: 27 Ոմանք. Նոյնպէս... Հասցէ պատե-
րազմ, 'ի թիկունս Հասանիցեն վաղվաղակի: 31 Ոմանք. Ընդէ՞ր
ծանրացուցէք: 32 Ոմանք. Լինիցին զոքա... եթէ ընդ ծով իցէ, և
եթէ: 9.1 Յօրինակին պակասէր. Անդրէն կրկնեալ յղեաց: Այլք. Եւ
զյաջակողմն թևոյն իւրոյ ընդ նոսա յերկրին:

4 Ոմանք. Հասին առ Բերէթ: Յօրինակին. Եւ Բ-ք Ռ-ք Հեծեալ: 7
Ոմանք. Եւ պատերազմն նեղէր զնոսա: 8 Ոմանք. Կարասցուք
ինչ կծանել: 9 Ոմանք. Զանձն ապրեցու"... ապա դարձցուք: 10
Այլք. Ընդ արութիւնս քաջութեան: 11 Ոմանք. Առաջի գնդին
խաղացին: 12 Ոմանք. Յառաջնում թևի անդ: 14 Ոմանք. Եւ անդ-
րէն 'ի վերայ յար": 15 Ոմանք. 'Ի կողմանս լերինն Ազովտայ: 17
Ոմանք. Յերկոցունց կողմանց անկեալ յերկիր թա": 18 Յօրինակին
կարմրագրեալ նշանակի Բանս. Անդ անկանէր Յուդա: 22 Այլք. Որ
արարեալ էր Յուդայի: 23 Ոմանք. Յետ մաՀուն Յուդայի:

րաւ դստերբն Հանդերձ 'ի քաղաքն Պտղոմէացւոց. յամին
Հարիւրորդի վաթսներորդի երկրորդի: [58]Եւ յանդիման ե-
ղեն թագաւորքն երկոքեան միմեանց, և ետ զԿղէոպատրա
զդուստր իւր. և արարին Հարսանիս մեծաւ պատրաստու-
թեամբ՝ մեծաւ փառօք ըստ օրէնս թագաւորաց 'ի քաղա-
քին Պտղոմէացւոց: [59]Ետ Հրովարտակս Աղէքսանդրոս առ
Յովնաթան, զի եկեսցէ նա առ նա: [60]Խաղա՛ց գնաց Յով-
նաթան մեծաւ փառօք 'ի քաղաքն Պտղոմէացւոց, և եկն
յանդիման եղև թագաւորացն երկոցուն մեծապէս պատա-
րագօք. և եգիտ շնո՛րՀս 'ի նոցանէ: [61]Եւ կուտեցան 'ի վե-
րայ նորա արք անօրէնք յԵրուսաղեմէ, ամբաստան լինել
զնմանէ. և ո՛չինչ անսայր թագաւորն նոցա: [62]Հրաման ետ
արքայ մերկացուցանել զՅովնաթան 'ի Հանդերձից իւրոց.
և զգեցուցին նմա ծիրանիս, և ընդ իւր նստոյց զնա: [63]Եւ
ասէ ցիշխանսն. Արդ երթի՛ջիք դուք ընդ նմա, և ընդ ամե-
նայն քաղաքս քարո՛զ տաջիք կարդալ. զի մի ոք իշխեսցէ
ամբաստան լինել վասն դորա. և մի ոք նեղեսցէ զդա մին-
չև բանիւ միով: [64]Եւ եղև իբրև տեսանէին զփառս նորա, և
լսէին զձայն բարբառոյ քարոզին, և տեսանէին զի զգեց-
եալ էր ծիրանիս՝ փախչէին, թաքչէին, կորնչէին ամենայն
չարախօսքն: [65]Եւ փառաւորեաց զնա թագաւորն ընդ ա-
ռաջին բարեկամսն, և արա՛ր զնա սպարապե՛տ կուսակալ:
[66]Եւ գնաց Յովնաթան յԵրուսաղէմ լի՛ ուրախութեամբ և
խաղաղութեամբ:
ԺԷ [67]Դարձեալ յամին Հարիւրորդի վաթսներորդի՝ Հինգերոր-
դի. ե՛կն Դեմետրիոս որդի Դեմետրեայ 'ի կողմանց Կրե-
տացւոց՝ յերկիրն Հարց իւրոց: [68]Տրտմեցա՛ւ յոյժ Աղէք-
սանդրոս՝ դարձա՛ւ անդրէն 'ի քաղաքն Անտիոքացւոց: [69]Եւ
կացո՛յց անդ Դեմետրիոս՝ զԱպողոնիոս, որ էր յառաջ 'ի
վերայ ստորին Ասորեստանեայց, և ժողովեաց նա զօրս
բազումս. և եկն բանակեցաւ նա զՅամնեաւ: Առաքեաց
նա առ Յովնաթան քաՀանայապետ, և ասէ. [70]Դու միայն
վերացեալ Հպարտացեալ կա՛ս 'ի վերայ մեր, և ես եղէ ծա-
ղր նախատանաց վասն քո. ընդէ՞ր դու նազիս 'ի վերայ մեր
լերամբքդ: [71]Արդ աղէ՛ դու՝ եթէ յուսացեալ ես 'ի զօրսդ
քո. է՛կ է՛ջ դու 'ի դաշտ այսր առ մեզ զի յանդիման լի-
ցուք միմեանց. զի գո՛ն և աստ ընդ իս զօրք քաղաքաց:
[72]Արդ՝ Հա՛րց փորձեա՛ դու՝ տե՛ս՝ ո՛ իցեմ ես, կամ ո՛ այն
իցեն որ օգնականն իցեն ձեզ: Եւ ասեն. Ո՛չ գոյ ձեզ ո-
տից կոխ առաջի մեր. զի երկիցս անգամ 'ի պարտութիւն
մատնեցան Հարքն ձեր յերկրին իւրեանց: [73]Եւ արդ ո՛չ կա-
րէք դուք զդէմ ունել զայդչափ այրուձիոյ, 'ի դաշտի ուր ո՛չ
գուցէ թուփ թաքստի, և ո՛չ տեղի փախստեան. և ո՛չ վէմ
ապաւինի. և ո՛չ խի՛ճ 'ի ձեռն՝ 'ի քար ձգելոյ: [74]Իբրև լուաւ
Յովնաթան զպատգամս զայն զԱպողոնեայ՝ բարկացաւ 'ի
միտս իւր, յո՛տն եկաց վաղվաղակի. ընտրեր զընտիր ըն-
տիր զօրացն իբրև արս տասն Հազար. և գա՛յր 'ի դուրս
յԵրուսաղեմէ. ընդ առաջ եղև նմա Շմաւոն եղբայր նորա,
ձեռնտո՛ւ լինէր նմա յօգնականութիւն: [75]Եւ եկին Հասին 'ի
քաղաքն Յոպպէացւոց. քաղաքացիքն զդուրս ընդդէմ դնէ-
ին, զի պաՀապանք ոստիկանութեամբ կային Ապողոնեայ
'ի վերայ նոցա, Հարին՝ մա՛րտ պատերազմի եդին 'ի վե-
րայ քաղաքին: [76]Նոքա առ երկիւղի բացին զդրրունսն. սոքա
մտին և տիրեցին 'ի վերայ քաղաքին: [77]Եւ իբրև զա՛յն լուաւ
Ապողոնիոս, կազմեցաւ պատրաստեցաւ՝ ա՛ռ ընդ իւր երիս
Հազարս սպառազէնս, և այլ զօրս բազումս. [78]և գնաց 'ի
կողմանս Ազովտայ, մօտ քերէր առ դաշտիւն, զի յուսաց-
եալ էր 'ի զօրս իւր: Զկնի՛ լինէր նորա Յովնաթան տա՛լ
մարտ պատերազմի: [79]Նա եթող Հազար Հեծեալ 'ի դարանի
զՀե՛տ նորա: [80]Իբրև ետես Յովնաթան եթէ դարան գործե-
ցին զՀետ նորա, եկի՛ն փակեցին պաշարեցին զամրո՛ց դա-
րանակալացն, և շուրջ զնոքօք արկին պատնէշ, և կային
պաՀէին յառաւօտէ մինչև յերեկոյ. որպէս Հրաման ետ նո-
ցա Յովնաթան: [81]Վաստակեցին՝ տաժանեցան Հեծեալքն,
և լուծան: [82]Զգողուղի կալաւ Շմաւոն զնդին իւրով, և
գայր ձորակին 'ի վերայ, և անկանէր զնոքօք՝ մինչդեռ
նոքա կային լուծեալք և ձանձրացեալք, անկանէր 'ի վե-
րայ. զբազումս անդրէն 'ի դարանի՛ անդ սատակէր. [83]զբա-
զումս Հեծելազօրս ընդ երե՛սս դաշտին փախստեայ առա-
ջի երեսաց իւրոց տանէր, Հատուցանէր մինչև 'ի կողմանս
Հազովտայ. ա՛յնչափ շտապ տագնապի 'ի վերայ Հասու-
ցանէր, զի փախստեայքն գնային 'ի մեՀեանն Դագոնայ
ամրանա՛լ անկանէին: [84]Հասանէ՛ր Յովնաթան զօրօքն Հան-
դերձ. պատէր զմեՀեանն Դագոնայ և զքաղաքն Ազովտաց-
ւոց, և որ շուրջ զնովաւ քաղաքքն էին առնո՛յր յաւարի.
զմեՀեանն Դագոնայ ամրացելովքն Հանդերձ այրէր Հրով:
[85]Եւ եղեն անկեալքն 'ի սրոյ՝ այրեցելովքն Հանդերձ՝ իբրև
արք ութ Հարիւր Հազար: [86]Չուեա՛ց խաղաց գնաց Յովնա-
թան անտի, և եկն բանակեցաւ 'ի կողմանս Ասկաղոնեայ,
եկին ելին 'ի քաղաքէ անտի ընդ առա՛ջ նմա փառօք: [87]Եւ
դարձաւ Յովնաթան յԵրուսաղէմ զնդաւն իւրով, և բա-
զում աւարաւ. զի բերէր զկապուտ զկողոպուտ բազում
զթշնամեաց: [88]Եւ իբրև լուա՛ւ զայս Աղէքսանդրոս, յաւե՛լ
փառաւորել առաւե՛լ ևս զՅովնաթան. [89]և ետ տանել նմա
շի՛նգղ ոսկի զորօրինակ օրէ՛ն էր ունել եղբա՛րց թագաւո-
րին. և ետ նմա զԱկկարոն ամենայն սաՀմանօքն Հանդերձ
'ի ժառանգութիւն:
11 Եւ թագաւորն Եգիպտացւոց զօրաժողո՛վ լինէր՝ կուտէր ԺԸ
զօրս բազումս իբրև զաւազ առ ափն ծովուն, և նաւս բա-
զումս. և խնդրէր նա ունե՛լ զարքայութիւնն Աղէքսանդրեայ
նենգութեամբ, և յաւելուլ յիւր արքայութիւնն: [2]Եւ ել ընդ
կողմանս Ասորեստանեայց բանիւ խաղաղութեամբ. և նո-
քա դուռն բանային նմա, և ընդ առաջ երթային նորա.
քանզի պատուէր էր յԱղէքսանդրեայ արքայէ՝ քանզի անէր
էր նորա: [3]Եւ իբրև մտանէր Պտղոմէոս 'ի քաղաքսն, յիւ-
րոց զօրացն պաՀապան թողոյր իւրաքանչիւր քաղաքաց:
[4]Իբրև եկին մերձեցան նոքա 'ի քաղաքն Ազովտացւոց,
ցուցին նմա զմեՀեանն Դագոնայ այրեցեալ, զքաղաքն և
որ շուրջ զիւրև էին այրեցեա՛լ 'ի ժամանակի պատերազ-
մի, և զդիակունսն որ այրեցեալ էր՝ բերեալ կուտեալ էր
կոյտս կոյտս 'ի վերայ ճանապարՀին: [5]Եւ պատմէին ա-
ռաջի արքային որ զինչ միանգամ գործեաց Յովնաթան,
և յաչա՛ց Հանէին զնա. և թագաւորն լռի՛կ կայր: [6]Եւ եկն
յանդիման եղև Յովնաթան թագաւորին 'ի քաղաքն Յոպ-
պէացւոց փառօք մեծօք. ողջոյն ետուն միմեանց, և եղեն
ա՛յն օր առ միմեանս: [7]Եւ գնա՛ց Յովնաթան ընդ արքա-
յին մինչև 'ի կողմանս գետոյն որ անուանեալ կոչի Ա-
զատ: Եւ դարձաւ Յովնաթան անդրէն յԵրուսաղէմ: [8]Իսկ
արքայ Պտղոմէոս տիրեաց 'ի վերայ քաղաքացն ծովեզեր-
եայց՝ մինչև 'ի քաղաքն Սելևկացւոց. և խորՀէր 'ի վերայ
Աղէքսանդրեայ խորՀո՛ւրդ չարութեան: [9]Եւ արձակեա՛ց նա
Հրովարտակս առ Դեմետր արքայ և ասէ. Եկ ո՛ւխտ դիցուք
առ միմեանս՝ և դաշինս կռեսցուք, և տա՛ց քեզ զդուստր
իմ զոր ունի Աղէքսանդրոս արքայ, և տիրեսցես դու 'ի
վերայ արքայութեան Հօր քոյ. [10]զի զղջացեա՛լ եմ թէ ընդէ՞ր
ետու ես զդուստր իմ նմա կնութեան. զի խորՀեցաւ նա
'ի վերայ իմ մա՛Հ: [11]Եւ ա՛յսպէս յաչաց Հանէր զնա, զի ի՛ւր
ակն եդեալ էր տէրութեան նորա: [12]Եւ եՀա՛ն զդուստրն, և
ետ Դեմետրի. և խոտորեցաւ յԱղէքսանդրէ, և յայտնեա՛ց
զթշնամութիւն իւր: Եւ եմուտ Պտղոմէոս և տիրեաց նա 'ի
վերայ քաղաքացն, և Սելևկեայ ծովեզերեայց: Եւ խորՀէր
չարութիւն 'ի վերայ Աղէքսանդրու: [13]Եկն եմուտ 'ի քա-
ղաքն Անտիոքացւոց. և եդաւ զթագ զԱսիացւոցն. և պսա-
կեցաւ կրկին թագաւն Ասիացւոց՝ և թագաւն Եգիպտաց-
ւոց: [14]Բայց Աղէքսանդրոս արքայ էր 'ի կողմանս Կիլիկեց-
ւոց 'ի ժամանակին յայնմիկ. զի ապստամբէին մարդիկն
'ի նմանէ: [15]Եւ լուաւ Աղէքսանդրոս՝ դիմեաց գա՛լ 'ի վերայ
նորա մարտիւ պատերազմաւ: Եւ ել Պտղոմէոս ընդ առաջ
նորա զօրօք բազմօք, և դարձոյց զնա 'ի պարտութիւն:

---

58 Ոմանք. Եւ ետ նմա զԿղէո՞: Ոսկան. Ըստ օրինաց թագաւո-
րաց: 65 Յօրինակին պակասէր. Եւ արար զնա սպարա՞: 69 Ոմանք.
Որ էր 'ի վերայ ստորին Ասորեաց... Նա զյամնեաւ: 70 Ոսկան.
Ընդէր դու զինիս 'ի վերայ մեր: 71 Ոմանք. 'Ի դաշտ այսօր առ
մեզ: 72 Ոսկան. Կամ ոյք այնք իցեն, որք օգնականք: 'Ի լուս. Զի
երկիցս անգամ. Համաձայն միոյ Եւեթ օրինակի 'ի Բնաբանի: Որ
այլ Գրչագիրք միաբան Համեմատ մերումս ունին՝ երկիցս: 73 Ո-
մանք. Ուրուք գուցէ թուփ թագ"... և ո՛չ խիճ ձեռն 'ի քար ձգ": 74
Ոմանք. Ձեռնտու լինել նմա: 79 Ոմանք. 'Ի դարանի զկնի նորա:

82 Ոմանք. Եւ գայր ձորձորակին 'ի վերայ: Բաղումք. Անդէն
'ի դարանի: 83 Այլք. Հասուցանէր մինչև 'ի կող": 85 Յօրինակին
Բուագրով այսպէս գրի՝ Արք ՊՌ. Համաձայն այլոց երկուց օրինա-
կաց: Եւ օրինակ մի՝ Ը Հարիւր Ռ: Իսկ երկու օրինակք Համեմատ
միմեանց ունին՝ ԸՌ: Եւ Ոսկան. արք ութ Հարիւր: 86 Ոմանք. Ընդ
առաջ նմա մեծաւ փառօք. կամ փառօք մեծօք: 87 Ոմանք. Զկա-
պուտ կողոպուտ բազում թշնա՞: 11.2 Ոմանք. Ընդ առաջ երթա-
յին նմա: 3 Ոմանք. ՊաՀապանս թողոյր յիւրա՞: 4 Ոմանք. Բերեալ
կուտէր կոյտս կոյտս: 5 Ոմանք. Զոր ինչ միանգամ... և թագա-
ւորն լռի՛ կայր: 6 Ոմանք. Փառօք մեծաւ: 8 Ոմանք. Ծովեզերեաց՝
մինչ 'ի քաղաքն: 9 Այլք. Եւ արձակեաց նա Հրեշտակս առ... ուխտ
դիցուք ընդ միմեանս: 10 Ոմանք. Զի զղջացեալ եմ ես: 12 Ոմանք.
Եւ եկն եմուտ Պտղո՞: 14 Ոմանք. 'Ի կողմանս Կիլիկէացւոց:

[16]Եւ փախստեայ լինէր Աղէքսանդրոս 'ի կողմանս Արա-
բացւոց. զի անդ թաքիցէ և ապրիցէ 'ի նմանէ: Եւ արքայ
Պտղոմէոս բարձրացաւ: [17]Եւ եհն Զաբէլ Արուայիկ, եհա՛տ
զգլուխն Աղէքսանդրեայ, և ետ տանել Պտղոմոսի արքայի:
[18]Եւ Պտղոմէոս մեռաւ յաւուրն երրորդի, և որ էին զամրօքն
սատակեցան յամրականացն:
ԺԹ [19]Եւ թագաւորեաց Դեմետր, յամին Հարիւրորդի վաթսն-
երորդի եւթներորդի: [20]Ընդ աւուրսն ընդ այնոսիկ ժո-
ղովեաց Յովնաթան զօրս 'ի Հրէաստան, գա՛լ մա՛րտ դնել
զբերդաւն որ յԵրուսաղէմ էր. կազմեցին զնովաւ շուրջ մեն-
քենայս բազումս: [21]Ապա գնացին ոմանք որ թշնամի՛ էին
ազգին Հրէից, ա՛րք անօրէնք պատմել թագաւորին, եթէ
Յովնաթան մենքենայս կազմեալ շուրջ զբերդաւն պատեալ՝
յառնուլ պատրաստեալ: [22]Իբրև լուաւ՝ բարկացա՛ւ յոյժ.
չուեաց և եկն 'ի Պտղոմէոս, ե՛տ Հրովարտակս առ Յով-
նաթան, զի մի՛ ևս զբերդն շուրջ պաշարեալ պահիցէ. այլ
ինքն յարուցեալ վաղվաղակի առ նա Հասանիցէ՝ 'ի քա-
ղաքն Պտղոմէացւոց զի անդ յանդիման լիցին միմեանց:
[23]Իբրև լուաւ Յովնաթան՝ և՛ս քան զևս պնդել Հրամայ-
եաց զպահ բերդին. և ինքն ա՛ռ արս ընտիրս իմաստունս
'ի ծերակոյտ ժողովրդենէ անտի, և 'ի քահանայից ան-
տի. [24]Համդերձեցաւ պատարագօք, ոսկւով և արծաթով, և
ե՛դ զանձն 'ի մահ, գնա՛ց յանդիման լինել թագաւորին 'ի
քաղաքն Պտղոմէացւոց: Եւ եգիտ նա շնորհս 'ի նմանէ.
[25]թէպէտ և բազումք էին յանօրինաց անտի ամբաստան
զնմանէ: [26]Եւ մեծարեա՛ց զնա թագաւորն որպէս առաջինքն
իւր. և բարձրացոյց զնա յոյժ առաջի ամենայն բարեկա-
մաց իւրոց. [27]և կարգեաց նմա զիշխանութիւն քահանա-
յապետութեանն. և որ ինչ ա՛յլ ինչ պատիւ ունէր յառաջա-
գոյն քան զնա: Կացոյց կարգեաց զնա ընդ առաջին բարե-
կամս: [28]Եւ աղաչեաց Յովնաթան զարքայն, զի ապահա՛րկ
արասցէ զՀրէաստան, և զերեսին կուսակալութիւնսն, և
զՇամրին: Եւ յանձն առ նմա տա՛լ նմա երեք Հարիւր քան-
քար: [29]Եւ Հաճո՛յ թուեցաւ թագաւորին. և վասն ա՛յսր ամե-
նայնի Հրաման ետ Հրովարտակս տալ առ Յովնաթան օրի-
նակաւս այսուիկ: [30]Արքա՛յ Դեմետր առ Յովնաթան եղբայր՝
ողջո՛յն: [31]Զպատճէն Հրովարտակիս այսորիկ գրեցաք մեք
առ Ղասթենէս եղբայր մեր, նովին օրինակաւ և առ ձեզ
գրեցաք զի գիտասջիք: [32]Արքայ Դեմետր՝ առ Ղասթենէս
Հայր՝ ողջոյն: [33]Ազգին Հրէից օգնական նիզակակից՝ ուխ-
տակա՛լ բարեկամաց մերոց, իրաւունս Համարեցաք դիւրել
բարի՛ առնել փոխանակ արդարութեան միամտութեամբ
զոր պաՀեցին նոքա առ մեզ: [34]Կարգեցաք մեք զսաՀմանս
Հրէաստանի, և զերիս օրէնսն՝ Ափարիմ, և Ղուդա, և Ռա-
թամին, յաւելցին 'ի Հրէաստանի 'ի կողմանս Շամրնի. և
ամենայն որ ինչ Հասի օրէն գայցէ 'ի նոցանէ՝ լիցի՛ այն
պաշտօնէից յԵրուսաղէմ. փոխանակ արքունական մուտին
որ գայր 'ի նոցանէ ա՛մ յամէ յարմտեաց երկրին, և 'ի բե-
րոյ ծառոցն պտղոյն: [35]Եւ ա՛յլ որ ինչ տարապք արքունի,
կամ տասանորդք, կամ մաքս, կամ ինչ որինչ մուտք յար-
քունիս իցեն. կամ բաժ աղտից, կամ տարազ պսակաց,
[36]զայս ամենայն թողցուք 'ի նոսա. և մի մի ինչ մի՛ յայս-
ցանէ անարգեալ գտցի մինչև յաւիտեանս ժամանակաց:
[37]Արդ ձեզ փո՛յթ լիցի առնել պատճէն մի Հրովարտակիդ,
և տալ առ Յովնաթան՝ զի դիցի 'ի գանձս սրբութեան՝ 'ի
դիպան վայր 'ի նշանաւոր տեղւոջ: [38]Իբրև ետես Դեմետր
արքայ, եթէ Հնազանդեցաւ ամենայն երկիր առաջի նորա.
և ո՛չինչ էր յաշխարհի որ ինչ ընդդէմ դառնայր Հրամանաց
նորա, Հրաման ետ արձակել զզօրսն յիւրաքանչիւր տեղիս.
բա՛ց 'ի զօրաց յազգաց Հեռաւորաց, և 'ի մարզիկ գնդէ
կղզեաց կղզեաց ոք:
Ի Եւ 'ի թշնամութիւն դարձան ամենայն զօրք ազգաց ընդ
նմա: [39]Տրիփոն անուն էր Աղէքսանդրեան տոհմին, իբրև ե-
տես եթէ զօրքն ամենայն տրտո՛ւնջ են զԴեմետրեայ՝ գնա՛ց
նա առ Իմաղկուս Արուայիկ, որ սնուցանէր զԱնտիոք
զպատանեակն Աղէքսանդրի: [40]Եւ առ նմա՛ կանխէր՝ զի
տացէ նա ցնա՛ զմանուկն, ևածցէ թագաւորեցուցէ 'ի
տեղի Հօր իւրոյ. և պատմեաց նմա որ ինչ միանգամ գործս
գործեաց Դեմետր, և զամենայն թշնամութիւնս որ միան-
գամ գոռային զօրքն. և անդ լինէր առ նմա աւուրս բա-
զումս: [41]Առաքեա՛ց Յովնաթան առ Դեմետր արքայ, զի
Հրաման տացէ իջուցանել զզօրսն որ 'ի միջնաբերդի անդ
էին, և որ յամուրս անդ էին. զի էին նոքա թշնամութեամբ
ընդ Իսրայէլի: [42]Եւ առաքեաց Դեմետրիոս առ Յովնա-
թան՝ և ասէ. Ո՛չ զայդ միայն արարից քեզ և ազգի քում,
այլ փառօք փառաւորեցից զազգ քո՝ եթէ ժամանակ մի-
այն գտից: [43]Արդ դու բարւոք արասցե՛ս, առաքեսցես առ
իս գունդ մի 'ի թիկունս, զի զօրքս աւասիկ յինէն յե՛տս
կացին: [44]Իբրև լուաւ զայն Յովնաթան, վաղվաղակի գունդ
մի յերից Հազարաց արս ընտիրս սպառազէնս արձակեաց
'ի թիկունս թագաւորին 'ի քաղաքն Անտիոքացւոց. և ու-
րա՛խ եղև թագաւորն 'ի Հասանել նոցա 'ի ձեռս նորա:
[45]Իբրև զայն լուան քաղաքացիքն. ժողովեցան յիւրաքան-
չիւր տեղւոջէ 'ի մէջ քաղաքին՝ իբրև բեւրք երկոտասան:
Այն ինչ յարձակեալ էին 'ի վերայ թագաւորին, կամէին
անդէն սպանանել. [46]նա խո՛յս ետ 'ի նոցանէ. և նոքա
առին վաղվաղակի զկիրճսն ամենայն գնացից քաղաքին.
մա՛րտ եդին և սկսան մաքառել: [47]Ա՛զդ եղև Իսրայէլեան
գնդին. կուտեցա՛ն 'ի վերայ ապարանից թագաւորին, ձա՛յն
ետուն միմեանց, և սփռեցան ընդ ամենայն քաղաքն. [48]իբ-
րև Հարին՝ սպանին կոտորեցին արս իբրև տասն Հազար.
Հրձի՛գ արարին զամենայն փայտակերտն զապարանից նո-
րա. և զինչս և զստացուածս նոցա առի՛ն յաւարի. արկին
յիւրեանս զթագաւորն, և ապրեցուցին զնա 'ի ձեռաց նո-
ցա: [49]Իբրև ետես մնացեալ գունդ քաղաքին, եթէ զօրացաւ
գունդն Իսրայէլեան 'ի վերայ նոցա, և կամակար յաղթե-
ցին նոցա. լքան նուաղեցա՛ն, և տկարացան 'ի խորհուրդս
իւրեանց. 'ի ձայն բարբառոյ ողոքանաց սկսան աղաղակե՛լ
առ թագաւորն՝ և ասեն. [50]Ձե՛ռն տուր մեզ, և դադարես-
ցէ գունդս մոլեկան 'ի կոտորածէ քաղաքիս: [51]Զա՛յն բան
ասէին, և զիւրաքանչիւր զէնս առ ոտս պատերազմողացն
ընկենուին: Եւ բարձրանա՛յր փառօք գունդն Իսրայէլեան
առաջի թագաւորին, և առաջի ամենայն զօրաց նորա. և
դառնային անդրէն յԵրուսաղէմ անուամբ մեծաւ և բազում
աւարաւ: [52]Եւ նստա՛ւ Դեմետր արքայ յաթոռ տէրութեան
իւրոյ, և սարսեաց երկիրն ամենայն առաջի նորա: [53]Եւ
ստեաց Իսրայէլացւոցն յամենայնի որ ինչ խոստացաւ նա
նոցա, և ամենևին օտարացաւ յաչս Յովնաթանու. և ո՛չ
Հատոյց նմա ըստ միամտութեան վաստակոց նորա:
[54]Յետ այսորիկ դարձա՛ւ Տրիփոն, և պատանեակն Ան- ԻԱ
տիոքոս ընդ նմա, թագաւորեալ և նստեալ յաթոռ տէրու-
թեան: [55]Եւ առ նա՛ ժողովէին զօրքն ամենայն որ ցրուեալ
էր 'ի Դեմետրեայ: Եւ ետուն մարտ պատերազմի ընդ Դե-
մետրեայ, և փախուցին զնա վատթարեալ: [56]Եւ եկն ա՛ռ
զգազանսն Տրիփոն. և կալաւ զքաղաքն Անտիոքացւոց:
[57]Հրաման ետ Հրովարտակ առնել մանուկն Անտիոքոս՝ ԻԲ
առ Յովնաթան՝ և ասէ. Կացուցեա՛լ իմ զքեզ 'ի գո՛րծ քա-
Հանայապետութեան, և Հաստատեալ իմ զքեզ 'ի վերայ չո-
րիցն օրինաց, և կարգեցաք զքեզ ընդ բուն և ընդ առա-
ջին բարեկամս մեր: [58]Եւ ե՛տ տանել նմա նուագս ոսկիս,
և սպաս տաճարին: Եւ ետ նմա իշխանութիւն ըմպել ոսկի
նուագօք, արկանել ծիրանիս, և իշխել կրել նշան շգեղ, ըստ
նշանի թագաւորաց: [59]Եւ զՇմաւոն զեղբայր նորա Հրաման
ետ իշխան զօրավար կացուցանել 'ի կողմանցն Ծուրայ
մինչև 'ի սահմանս Եգիպտացւոց: [60]Եւ ել Յովնաթան շրջել
յայնկոյս Յորդանան գետոյ՝ և ընդ քաղաքսն, և ժողովե-
ցան առ նա ամենայն զօրք Ասորւոց 'ի թիկունս: Եւ եկն
նա 'ի կողմանս Ասկաղոնեայ. և ելին նմա քաղաքացիքն
ընդ առաջ մեծա՛ւ գովութեամբ: [61]Անտի գնա՛ց եկն 'ի
Գազայ, և Գազացիքն փակեցին նմա զդրունսն. նստա՛ւ
շուրջ զնովօք, և Հրձիգ արար զաւանս նոցա. և զինչս և
զստացուածս նոցա վարեցին 'ի գերութեան: [62]Ապա եկին

---

17 Ոմանք. Տանել Պտղոմէոսի. կամ՝ Պտղոմէի առ": 21 Ոսկան. Յառնուլ պատրաստեալ է: 22 Ոմանք. Չուեաց և եկն Պտղոմէոս: Ի– ոմանք. Եկն 'ի Պտղոմեցիս... 'ի Պտղոմէացւոց քաղաքն: 24 Ոմանք. Եւ ետ զանձն 'ի մահ: 27 Ոմանք. Ունէր յառաջ քան զնա: 28 Ոսկան. Եւ յանձն էառ նա տալ: 31 Յօրինակին. Առ Զասթենէս եղ": 33 Ոմանք. Արդարութեան միամտութեան: 34 Ոսկան. 'Ի կողմանցն Շամրնի... Հասի օրէն գայր: Ոմանք. Եւ 'ի բերոյ ծառոցն պտղոց: 35 Ոմանք. Կամ որ ինչ մուտք յարքունիս: 36 Ոմանք. 'Ի նոսա. և մի մի ինչ յայսցանէ: 37 Ոմանք. Տալ ցՅովնաթան... 'ի դիպան վայրի: Ո–ք Ոսկան. 'Ի Յոնաթան, զի դիցէ 'ի գանձն: 38 Ոմանք. Որ ընդդէմ դառ"... բայց 'ի զօրաց ազգաց:

39 Ոմանք. Տրիփոն ոմն անուն Աղէքսան": Այլք. Սնուցանէր զԱնտիոքոս: 40 Յօրինակին. Զի տացէ նմա ցնա: Ոմանք. Զի ածցէ թագաւորեցուցէ: 42 Ոսկան. Ժամանակ միայն գտցի: 48 Ոմանք. Արկին իւրեանց զթագաւորն: 51 Յօրինակին. Եւ դառնացին անդրէն յԵրուսաղէմ անուամբ մե": 52 Յօրինակին կրկին. Երկիրն ամենայն ամենայն: 55 Բազում. Որ ցրուեալ էր Դեմետրեայ: Ո–ք Ոսկան. զոր ցրուեալ էր: 57 Ոմանք. Կացուցեալ եմ զքեզ... և Հաստատեալ եմ: 61 Ոսկան. Նմա զդրունսն Գազայ: Ոմանք. Եւ զինչս

ցեն՝ և մի՛ առնուցուն, մի՛ գնիցեն և մի՛ վաճառիցեն:
[37]Եւ ժողովեցան շինել զքաղաքն. և ինչ որ անկեալ էր ’ի
պարսպացն յուղխաջուր Հեղեղատաց ’ի ծմակին կողմանց
անտի, որ անուանեալ կոչի Փակնթա: [38]Եւ Շմաւոն սկսաւ
շինել զԱդեդա յԱփիղա. ամրացոյց զնա, և դրունս եդ նմա,
և նրգօք Հաստատեաց զնա:
ԻԶ [39]Եւ խնդրէր Տրիփոն թագաւորել կողմանցն Ասիացւոց,
և դնել թագ, և ձգել զձեռն ’ի վերայ արքային Անտի-
ոքացւոց: [40]Բայց երկեաւ զանգիտեաց, թէ գուցէ յանձն
ո՛չ առնուցու Յովնաթան, և խաղայցէ ’ի վերայ նորա
մարտիւ պատերազմաւ. և խնդրէր նա Հնարս ըմբռնել
զնա՝ և կորուսանել. [41]խաղաց գնաց՝ և եկն ’ի կողմանս
Բեթսանայ: Եւ ել ընդ առաջ նորա Յովնաթան քառասուն
Հազարաւ ընտիր վառելով պատրաստեալ պատերազմի, և
եկն եՀաս նա ’ի Բեթսա: [42]Եւ ետես Տրիփոն եթէ Հասեալ
է Յովնաթան զօրօք բազմօք, և զանգիտեաց ձգել զձեռս
իւր ’ի նա. [43]ապա ա՛ռ ընկալաւ զնա փառաւորութեամբ,
և յանդիմանեաց զնա ամենայն բարեկամացն իւրոց. և ետ
նմա պարգևս, և Հրամ՛ան ետ զօրացն իւրոց զի Հնազանդ
լիցին նմա: [44]Խօսել սկսաւ ընդ Յովնաթանու՝ և ասէ. Ըն-
դէ՞ր զայդչափ զօրս կոտորեցեր, զի ո՛չինչ գոյր ’ի միջի
գո՛րծ պատերազմի: [45]Արդ արձակեա՛ դու զզօրսդ յիւրա-
քանչիւր տեղիս, և ընտրեա՛ դու ընդ քեզ արս սակաւս որ
ընդ քե՛զ Համապազ շրջիցին, և ե՛կ դու ընդ իս ’ի քաղաքն
Պտղոմէացւոց, և տա՛ց քեզ զնա ’ի ձեռս, և զայլ ամուրս
զօրօքն Հանդերձ, որպէս ’ի ձեռն լիցի, և ես դարձայց
անդրէն. զի վասն ա՛յսորիկ իսկ եկեալ էի: [46]Եւ Հաւատաց
նա ’ի նա, և արա՛ր որպէս Հրամայեաց նմա, և արձակեաց
զզօրսն յիւրաքանչիւր տեղիս յերկիրն Հրէաստանի: [47]Եւ ե-
թող առ իւր ’ի նոցանէ իբրև արս երիս Հազարս: Դարձեալ
եթող ’ի նոցանէ զերկուս Հազարսն յերկրին Գալիլեացւոց.
և ինքն գնա՛ց ընդ նմա Հազարաւ միով: [48]Եւ իբրև եմուտ
Յովնաթան ’ի քաղաքն Պտղոմէացւոց, առին զդրունսն
քաղաքացիքն և զնա ’ի ներքս արգելին, և Հանին ընդ սուր
զամենեսին որ ընդ նմա մտեալ էին: [49]Եւ արար Տրիփոն
զօրս ’ի վերայ զօրաց նորա որ էին յերկրին Գալիլեաց-
ւոց՝ և ’ի դաշտին մեծի, զի երթիցեն սատակեսցեն զամեն-
այն զօրսն Յովնաթանու: [50]Նոքա իբրև գիտացին թէ նա ’ի
ներքս արգելաւ, և ամենեքեան կորեան որ ընդ նմա էին,
մխիթարեցին զանձինս, և գնացին միագունդ միաբանու-
թեամբ ’ի մա՛րտ պատերազմի: [51]Իբրև տեսին զօրականքն
որ ’ի վերայ երթեալ էին, թէ սրտի մտօք ’ի վերայ իւրա-
քանչիւր ոգւոց մարտնչէին. զանգիտեցին, թողին և դար-
ձան: [52]Եւ նոքա եկին Հասին յերկիրն Հրէաստանի խաղա-
ղութեամբ: Կո՛ծ առին՝ լացին զՅովնաթան և զզօրսն որ
ընդ նմա էին, և էին յերկիւղի մեծի: Եւ նստէր ’ի սուգ
ամենայն Իսրայէլ, և լային զՅովնաթան: [53]Սկսա՛ն խնդրել
ամենայն Հեթանոսք որ շուրջ զնովօք էին սատակել զնո-
սա, զի ասէին այսպէս, [54]թէ չի՛ք ոք գլուխ իշխան ’ի վերայ
նոցա, որ տայ ընդ մեզ մարտ պատերազմի. արդ եկա՛յք՝
Հասցո՛ւք ’ի վերայ, ջնջեսցուք զյիշատակ նոցա յերկրէ:
13 Եւ լուաւ Շմաւոն՝ եթէ ժողովեաց Տրիփոն զօրս բա-
զումս գալ Հասանե՛լ ’ի վերայ երկրին Հրէաստանի սատա-
կել զնոսա. [2]և ստուգեաց թէ յաՀի յերկիւղի մեծի է: Եւ
ինքն եկն ել յԵրուսաղէմ, ժողովեաց և նա զժողովուրդսն.
[3]մխիթարեաց զնոսա՝ և ասէ. Դուք ինքնին գիտէք որչափ
գո՛րծ գործեցաք՝ ե՛ս և եղբարք իմ, և տուն Հօր իմոյ. քա-
նի՛ մարտ պատերազմի մղեցաք, կամ ո՞րչափ նեղութեան
Համբերաք ’ի վերայ սրբութեանցն օրինաց և քաղաքին.
[4]զի վասն Իսրայէլի՝ և ձեր ամենեցուն կորեան եղբարքն
ամենայն, և ես մնացեալ եմ միայն: [5]Եւ արդ քա՛ւ լիցի
անխայել ապաշաւել յանձն իմ, յամենայն ժամանակս նե-
ղութեան. արութեամբ ինչ՝ չե՛մ լաւ քան զեղբարսն, [6]բայց
սակայն զօրացա՛յց խնդրել զվրէժ զազգի ’ի վերայ սրբու-
թեանցն օրինաց, ’ի վերայ կանանց և որդւոց. զի աւա-
սիկ ժողովեալ են Հեթանոսքն ամենայն, Հասանել սատա-
կել զյիշատակս մեր յերկրէ: [7]Իբրև զայն խօսէր՝ զուար-
թացուցանէր՝ մխիթարէր զամենայն միտս ժողովրդեանն:
[8]Ետո՛ւն պատասխանի, սկսան խօսել ’ի ձայն մեծ՝ և ա-
սեն. Դո՛ւ ես մեր առաջնորդ փոխանակ Յուդայի և Յով-
նաթանու եղբօր քոյ. [9]մարտի՛ր զպատերազմ մեր, և զա-
մենայն որ ինչ ասիցես՝ Հնազանդ լիցուք քեզ: [10]Եւ ժողով-
եաց նա զամենայն արս պատերազմի, վաղվաղեաց՝ փու-
թացաւ՝ շինեաց զպարիսպն Երուսաղեմի: [11]Եւ արձակեաց
նա զՅովնաթան զԱբիսողոմեան զօրօք բազմօք ’ի քաղաքն
Յոպպէացւոց. և եՀան նա անտի զպաՀապանսն, և ինքն
եմո՛ւտ ամրացաւ, և պաՀէր զնա: [12]Յետ այսորիկ խաղաց
գնաց Տրիփոն ’ի քաղաքէն Պտղոմէացւոց զօրօք բազմօք՝
գա՛լ յերկիրն Հրէաստանի. և ածէր ընդ իւր զՅովնաթան
’ի զգուշութիւն պաՀպանութեան: [13]Եւ Շմաւոն բանակեալ
էր ’ի Դիդա յանդիման դաշտին: [14]Եւ գիտաց Տրիփոն թէ
Համբարձաւ Շմաւոն փոխանակ Յովնաթանու եղբօր իւ-
րոյ, և պատրաստեալ է նա ’ի մարտ պատերազմի. արար
Հրեշտակս՝ և արձակեա՛ց առ նա և ասէ. [15]Վասն արծա-
թոյն որ պարտէր Յովնաթան յարքունիս՝ արգելեալ կայ
աստ. [16]արդ տո՛ւր բերել զարծաթն Հարիւր քանքար, և
երկուս որդիս յորդւոց նորա տո՛ւր ածել առ իս. զի մի՛
յորժամ արձակեսցուք՝ ապստամբ լիցի սա ’ի մէնջ: [17]Եւ
գիտաց Շմաւոն, եթէ նենգութեամբ խօսի ընդ նմա, ե՛տ
տանել զարծաթն և զպատանեակսն. գուցէ ինչ թշնամու-
թիւն լինիցի ընդ ժողովրդեանն և ընդ նմա. [18]և ասիցեն,
թէ ագաՀեաց յարծաթն՝ և չե՛տ տանել զպատանեակսն,
և այրն կորեաւ: [19]Ապա ետ տանել զպատանեակսն՝ և
զՀարիւր քանքարսն. և սակայն ստեաց, և ո՛չ արձակեաց
զՅովնաթան: [20]Եւ յետ այսորիկ եկն Տրիփոն ’ի կողմանս
երկրին, շրջել և սատակել զնոսա, և պատեցին զճանա-
պարՀն Ադովրայ: Եւ Շմաւոն բանակաւ Հանդերձ զառաջս
ունէր նորա՝ յոր կողմ և երթայր առ նա: [21]Եւ որք ’ի
միջնաբերդին էին յԵրուսաղէմ. յղեցին առ Տրիփոն Հրեշ-
տակս՝ ստիպել զնա, զի եկեսցէ առ նոսա ընդ անապատն,
և Համբա՛րս բերդին արասցէ: [22]Եւ պատրաստեցաւ Տրի-
փոն գնդաւն Հանդերձ՝ գա՛լ մտանել ’ի գիշերին յայնմիկ.
և ձիւնաբեր եղև յոյժ, վասն այնորիկ ո՛չ կարաց մտանել.
չու արար եկն ’ի կողմանս Գաղաադու: [23]Իբրև մերձե-
ցաւ նա ’ի Բասկանա՝ անդ սպան զՅովնաթան, և անդէն
թաղեցաւ: [24]Դարձաւ անտի Տրիփոն և եկն յաշխարՀ իւր:
[25]Եւ առաքեաց Շմաւոն՝ բարձ անտի զոսկերսն Յովնա-
թանու եղբօր իւրոյ. և բերին թաղեցին զնա ’ի Մովդիիմ
’ի քաղաքն Հարց իւրոց: [26]Կո՛ծ եդին, լացին զնա ամե-
նայն Իսրայէլ, և սո՛ւգ առին աւուրս բազումս: [27]Եւ անդ
շինեաց շինուած ’ի վերայ գերեզմանի Հօր իւրոյ և եղ-
բարց իւրոց. և բարձրացոյց զնա գո՛րծ քարկոփ քարկոփ
շուրջանակի. [28]և կանգնեաց ’ի վերայ նորա բրգունս դէմ
ընդդէմ. և կացոյց անդ երիս վառեալս՝ Հօրն և եղբարցն
դէմ ընդդէմ: [29]Սեամբք բարձրութեան վանդակապատ. և
արար իւր անուն յափտենից: Եւ եդ զկողիւք վանդակին
գո՛րծ քանդակի նաւա՛ց նմանութեան. զի երևելի կացցեն
որ անցանեն ընդ ծով նաւօք, [30]առ շիրմօքն զոր արարին
’ի Մովդիիմ մինչև յօրս յայս:
[31]Եւ Տրիփոն գնայր նենգութեամբ ընդ արքայի Անտի- ԻԷ
ոքայ մանկան. սպան զնա, [32]և թագաւորեաց ընդ նո-
րա. և թագ ա՛ռ նա զԱսիացւոց, և արար Համարս մե-
ծամեծս յերկրի: [33]Եւ շինեա՛ց Շմաւոն զամուրսն Հրէաս-
տանի, բարձրացո՛յց պարսպօք, և կանգնեաց զաշտարակս,
դրամբք և նգօք Հաստատեաց. և պնդեաց զամուրսն Համ-

36 Ոմանք. Եւ զքաղաք ’ի բարձ". կամ և քաղաքին ’ի բարձ": 38 Ոսկան. ԶԱդեդայ յԱփիղայ: 41 Ոմանք. Ընտիր ընտիր վառելով: 42 Բազում. Զանգիտեաց ձգել զձեռն իւր: 44 Ոմանք. ’Ի միջի մարտ պատերազմի: 45 Ոմանք. Դու քեզ արս սա"... զի վասն այսր իսկ եկ": Յօրինակին պակասէր. Եւ տաց ԶԷզ զնա ’ի: 48 Օրինակ մի. Եւ Հանին ընդ նոսա զամենեսեան: 49 Ոմանք. Եւ ’ի դաշտին մեծ. զի եր": 51 Ոմանք. Որ ’ի վերայն երթեալ էին: 54 Ոսկան. Գլուխ և իշխան ’ի վերայ: 13.2 Ոսկան յաւելու. Թէ ժողովուրդն յաՀի և յեր"... և ինքն եկեալ յԵրուսաղէմ ժողովեաց զժողովուրդն: 3 Ոմանք. Որչափ ինչ գործ գործե": Բազում. Նեղութեան Համբերեցաք... օրինաց և քաղաքիս: 4 Ոսկան. Եղբարքն իմ ամենեքեան:

5 Ոմանք. Ապաշաւել զանձն իմ: Ոսկան. Քան զեղբարսն իմ: 6 Ոմանք. Կանանց և որդւոց ձերոց: 8 Ոմանք. Եւ Յովնաթանու՝ եղբարց քոց: 10 Ոմանք. Զպարիսպսն Երուսաղեմի: 13 Բանակեալ էր ’ի կողմանս Դիդայ յանդիման դաշտին: 15 Ոսկան. Զոր պարտ էր Յօնաթան: 17 Ոմանք. Խօսի նա ընդ նմա... լիցի ընդ ժողովուրդն և ընդ նա: 20 Այլք. Յոր կողմ և երթայր նա: 22 Այլք. Չու արար և եկն: 23 Ոմանք. Մերձեցաւ նա ’ի Բակսանայ: 25 Ոմանք. Եւ արձակեաց Շմաւոն՝ բարձ անտի: 27 Ոմանք. Գործ քարկոփ քարակոփ: 28 Ոսկան. Բրգունս դէմ յանդիման: 29 Ոմանք. Նմանութեամբ. զի երևելի կայցեն... ընդ ծով նաւուք: 30 Ոմանք. Մինչև յաւուրս յայս:

ձեալ յետ այսց ժամանակաց, Շմաւոն հրեշտակս առնէր
անդրէն ’ի Հռոմ մեծաւ պատարագաւ, և ոսկւով վահանաւ
’ի հազար քանքարէ. զի երթիցէ հաստատեսցէ զառաջին
բարեկամութիւնն և թիկունս: [25]Իբրև լուան զայն գունդն
Հռոմայեցւոց, սկսան խորհե՛լ և ասել. Իսկ արդ զի՞նչ ե-
րախտեաց երախտիս դարձուցուք Շմաւոնի՝ և որդւոց
նորա. [26]զի հաստատեաց նա և եղբարք իւր և տուն հօր
իւրոյ զայն որ առ մեզ բարեկամութիւն. հարկանելով եհա՛ր
զթշնամիս իւր. և հաստատելով հաստատեա՛ց զմեզ ընդ
իւր ’ի բարեկամս և ’ի թիկունս: Եւ հաստատեցին նմա
ազատութիւն, և գրեցին զայս ’ի տախտակս պղնձիս: Եւ
կանգնեցին նմա արձա՛ն ’ի լերինն Սիոն: [27]Եւ ա՛յս պատճէն
գրոյն զոր գրեցին. Յամին հարիւրորդի եւթանասներորդի,
որ օր ութուտամն էր ամսոյն, ’ի վերայ ամին երրորդի առ
քահանայապետութեամբն Շմաւոնի, ’ի Սամարէք՝ [28]առա-
ջի մեծաց ժողովրդոց՝ քահանայից՝ ժողովրդեան՝ իշխա-
նաց՝ ազգաց՝ և ծերակոյտ գաւառաց բազմաց: Ա՛զդ եղև
մեզ՝ քանզի բազում մարտք պատերազմի մղեցան յերկ-
րի անդ: [29]Այլ Շմաւոն որդի Մատաթեայ քահանայապե-
տի որդւոցն Յովարիմ, եղբարքն հանդերձ ե՛դ զգլուխ իւր
’ի կշիռս, և ետ զանձն իւր ’ի ճգնութիւն մարտի պատե-
րազմի. դիմակա՛լ եղև թշնամեաց ազգի նոցա, զի սրբու-
թիւնքն իւրեանց և օրէնքն մի՛ պղծեսցին. և փառօք մեծօք
փառաւորեաց զազգս նոցա: [30]Եւ ժողովեաց Յովնաթան
զազգսն նոցա, և եղև նոցա քահանայապետ, հանգեաւ նա՝
և ժողովեցաւ առ հարս իւր: [31]Եւ կամեցան թշնամիք նո-
ցա հասանե՛լ ’ի վերայ երկրի նոցա, և ձգե՛լ զձեռս իւր-
եանց ’ի սրբութիւնս նոցա: [32]Յայնմ ժամանակի յարեա՛ւ
Շմաւոն, և ետ մա՛րտ պատերազմի ’ի վերայ ազգին իւր-
եանց, և ծախեաց նա գանձս բազումս յիւրմէ և արար նա
հանդերձս զինու զարդու արանցն պատերազմողաց ազգին
իւրում, և կուտեաց նա համբարս և թոշակս զօրականին:
[33]Եւ ամրացոյց զքաղաքսն Հրէաստանի: Զբեթսուրա՝ որ
’ի սահմանս Հրէաստանի էր, ուր հանդերձեալ դնէր զզէնն
ամենայն՝ զէն և զա՛րդ առաջին զօրաց թշնամեաց նո-
ցա. և կացոյց նա անդ արս Հրէաստանեայս պահապանս:
[34]Եւ զքաղաքսն Յոպպէացւոց ամրացոյց՝ որ ’ի վերայ ծո-
վուն էր. և զԳազարայ՝ որ ’ի վերայ սահմանաց Ազովտա՛յ
էր, զոր յառաջ թշնամիքն ունէին. և բնակեցոյց անդ արս
Հրէաստանեայս, և որինչ միանգամ պէտք էին իւրեանց՝
հաստատութեամբ յօրինեաց զնոսա: [35]Իբրև զայս ամենայն
զգործս տեսին Շմաւոնի ժողովուրդքն, և զփառսն զոր
խորհէր ’ի վերայ ազգին, և կացուցին զնա իշխան քա-
հանայապետ՝ զի զայս ամենայն արարեալ էր նորա նոցա.
և զարդարութիւնն և զհաւատն զոր պահէր նա ’ի վերայ
ազգին իւրոյ, և խնդրէր նա յամենայն հանգամանս բարձ-
րացուցանե՛լ զժողովուրդ իւր: [36]Եւ յաւուրս նորա աջողեցաւ
’ի ձեռս նորա ջնջե՛լ հեթանոսացն յերկրէ նորա, այնոցիկ
որ ’ի միջնաբերդին էին յԵրուսաղէմ. ելանէին մտանէին և
պղծէին յոյժ շուրջ զսրբութեամբն, և հարուածք մեծամեծք
լինէին ’ի սրբութեան անդ, արգե՛լ զնոսա և ջնջեաց զնո-
սա: [37]Նստո՛յց և ամրացոյց անդ պահապանս վասն զգու-
շութեան երկրին և քաղաքին, և բարձրացո՛յց զնա: [38]Սա-
կայն և Դեմետր արքայ բարձրացոյց զքահանայապետու-
թիւն նորա. [39]վասն այսր ամենայնի ընդ բո՛ւն բարեկամս
փառաւորեաց զնա ’ի փառս մեծութեան: [40]Զի լո՛ւ եղև
նմա եթէ անուանեալ կոչին Հրէայքն բարեկամք Հռոմա-
յեցւոց, եղբարք և թիկունք և նիզակակիցք. և զի ընկալան
զհրեշտակսն Շմաւոնի փառաւորութեամբ: [41]Զի Հրէայքն
ինքեանք և քահանայքն հաճեցան, յանձն առին՝ իշխան
քահանայապետ կացուցանել զնա յաւիտեանս ժամանակի.
մինչև կանգնեսցի մարգարէ հաւատարիմ. [42]զի լիցի նոցա
զօրավար յառաջնորդութեան. և զի փո՛յթ լիցի նմա վասն
սրբոցն. և կացուցանել ’ի նորա ձեռանէ ’ի վերայ գործոց
նոցա, ’ի վերայ գաւառաց նոցա, ’ի վերայ զինու զարդու
նոցա, և ’ի վերայ ամրոցաց նոցա: [43]Վասն զի փո՛յթ լի-
ցի նմա վասն սրբոցն. և հնազանդեսցին նոցա ամենայն
ազգք, և յանուն նորա կնքիցին ամենայն մուրհակք աշ-
խարհի: Զի իշխա՛ն լիցի արկանել ծիրանիս, և զարդա-
րել ոսկւով: [44]Եւ մի՛ ոք իշխեսցէ ’ի ժողովրդոց անտի կամ
’ի քահանայից ընդդէմ դառնալ հրամանաց նորա, և կամ
ժողովել ժողովս յերկրի նորա առանց նորա. և կամ զգե-
նուլ ծիրանիս, կամ արկանել շիգղ ոսկի: [45]Զի եթէ ոք մի
ինչ յայսցանէ անցցէ և կամ անարգեսցէ՝ մահապա՛րտ լի-
ցի: [46]Եւ հաճո՛յ թուեցաւ ’ի ժողովրդեանն առնել Շմաւոնի
ըստ բանիցս այսոցիկ: [47]Ա՛ռ յանձն Շմաւոն, և հաճեցաւ
կա՛լ ’ի գլուխ քահանայապետութեան. լինել սպարապետ
զօրավար՝ գնդին Հրէաստանի, և կալ գլո՛ւխ քահանայից,
և առաջնորդել ամենեցուն: [48]Եւ զգիրս զայս գրել ’ի տախ-
տակս պղնձիս, և հրամայեցին դնել յամրի ’ի նշանաւոր և
յերևելի՛ տեղւոջ ’ի մէջ սրբութեանցն. [49]և զպատճէնս նոցա
դնե՛լ ’ի գանձ. զի Շմաւոն և որդիք նորա զայն առ իւր
ունիցին հանապազ:

15 Եւ առաքեաց Անտիոքոս որդի Դեմետրեայ արքայի՝ Լ
հրովարտակս ’ի կղզեա՛ց անտի առ Շմաւոն քահանայա-
պետ՝ և կուսակալ ազգին Հրէից՝ և առ ամենայն ազգս
նորա. [2]և էին հրովարտակքն օրինակ զայս. Արքայ Ան-
տիոքոս՝ առ Շմաւոն մեծ քահանայապետ՝ և առ կուսա-
կալ ազգին Հրէից՝ ողջո՛յն: [3]Քանզի ոմանք անօրէնք եկին՝
բո՛ւռն եղեն արքայութեան հարցն իմոց. և արդ՝ ես ա՛ւա-
սիկ ’ի խնդիր եմ անդրէն շինել կանգնե՛լ հաստատել զնոյն
արքայութիւն որպէս էր զառաջինն: Արդ ես՝ զօրաժողո՛վ
եմ զօրօք բազմօք՝ պատրաստեալ նաւս պատերազմի, [4]ե-
լանել խնդրել զվրէժ հարցն իմոց յազգաց վնասակարաց
երկրին մերոյ, և որ աւերեցին զքաղաքսն մեր զմեծամեծս:
[5]Արդ հաստատեալ իմ զքեզ, զամենայն ուխտ հարկին զոր
թողին ձեզ թագաւորքն առաջինք, և որ ինչ այլինչ հա՛ս օ-
րէն հարկի իցէ՝ թողեա՛լ լիցի քեզ: [6]Եւ հրաման ևս տուաք,
զի իշխա՛ն լիցիս հատանել առանձինն դահեկան յաշխարհի
քում. [7]և Երուսաղէմ: Եւ սրբութիւնդ ազա՛տ լիցին յամե-
նայնէ. և զէնդ և զարդ զոր գործեցեր, և զամուրսդ որ
ամրացուցեր՝ քե՛զ լիցին այդ: [8]Եւ ամենայն պարտք ար-
քունի, հասք և օրէնք որ այտի գային՝ քե՛զ լիցին յայսմ
հետէ մինչև յաւիտեանս ժամանակաց: [9]Այլ իբրև հասցուք
’ի տէրութիւն մեր, փառաւորեսցուք զքեզ և զազգդ քո, և
զտաճարդ ’ի փառս մեծութեան. զի յայտնի լիցին փառքն
ձեր ընդ ամենայն երկիր: [10]Յամին հարիւրորդի եւթա-
նասներորդի չորրորդի՝ եկն եհաս Անտիոքոս յերկիրն հարց
իւրոց: Ժողովեցան առ նա ամենայն զօրք, և սակաւք ինչ
մնացին առ Տրիփոնեայ: [11]Եւ հալածեաց զնա Անտիոքոս,
և ած արկ զնա ’ի Դովրա ծովեզերեայց. [12]և թողին զնա ա-
մենայն զօրքն. և իբրև տեսին զչարիսն որ անցին ընդ նա:
[13]Անտիոքոս եկն բանակեցաւ շուրջ զԴովրաւ երկոտասան
հազարաւ՝ մարտիկ պատերազմօղ արամբ, և ութ հազար
հեծեալ սպառազինաւ. [14]և զծովակողմն փակեաց նաւօք. և
’ի նե՛ղ արկ զքաղաքն ’ի ծովէ և ’ի ցամաք կուսէ. և ո՛չ զոք
թողուին ելանել:
[15]Եւ եկն Նումէնիոս և որ ընդ նմա էին, բերին հրո- ԼԱ
վարտակս ’ի Հռովմ քաղաքէ առ թագաւորս երկրին, յորս
գրեալ էր այսպէս. [16]Ղևկիոս հիւպատոս Հռոմայեցւոց՝ առ
արքայ Պտղոմէոս ողջոյն: [17]Ծերքդ ’ի Հրէաստանէ եկին
առ մեզ նորոգել զառաջին սէր բարեկամութեան, նիզա-
կակիցս և թիկունս մեզ. զորս արձակեալ առ մեզ Շմա-
ւոնի քահանայապետի՝ և գնդին Հրէից. [18]բերին մեզ վա-
հան ոսկի ’ի հինգ հազար քանքարէ: [19]Վասն այսորիկ հա-
ճո՛յ թուեցաւ մեզ գրել առ թագաւորս երկրիդ՝ և ամե-
նայն ազգացդ, զի մի՛ ոք ինչ յոռի խորհիցի ’ի վերայ
նոցա. և մի՛ տայցեն մա՛րտ պատերազմի ընդ քաղաքս
դոցա՝ և ընդ երկրի. զի մի՛ դոքա ընկեր լիցին մար-

26 Ոմանք. Զայն առ մեզ բարեկա՛... ’ի լերինն Սիոնի: Ոսկան. Եւ հաստեցին նմա ազատ՛՛: 27 Ոսկան յա–ելո–. Եօթանասներորդի երկրորդի: 28 Ոմանք. Առաջի մեծաց ժողովոց: 29 Ոմանք. Յորդւոցն Յովարիմ... և եդ զանձն իւր: 34 Ոմանք. Եւ զքաղաքսն Յոպպեցւոց... ’ի վերայ ծովուն է... Ազովտայ է, զոր: 35 Ոմանք. Տեսին զՇմաւոնի... զոր խորհէր նա ’ի վերայ ազ՛՛... իշխանքն քահանայապետ: 36 Ոմանք. Եւ այնոքիկ որ ’ի միջնաբերդն էին: 42 Ոմանք. Զի փոյթ լիցի նոցա... և ’ի վերայ ամրոց նոցա:

44 Ոմանք. Կամ զգենուլ... շինկղ ոսկի: 46 Ոմանք. Հաճոյ թուեցաւ ժողովր՛՛: 49 Ոմանք. Դնել ’ի գանձի: Ոսկան. Զայն առ իւրեանս ունիցին: 15.1 Ոմանք. Եւ առ ամենայն ազգս նոցա: 2 Ոսկան. Եւ ունէին հրովար՛՛: Ոմանք. Զօրինակ զայս... առ կուսակալ: 3 Ոմանք. Աւասիկ խնդրեմ շինել: 5 Օրինակ մի. Արդ պատրաստեալ իմ զքեզ: Ո–ր Ոսկան. Հաստատեալ եմ քեզ զամենայն: 6 Ոմանք. Յաշխարհի քում (7) յԵրուսաղէմ... ազատ լիցի յամենայնէ... զոր ամրացուցեր՝ քեզ լի՛՛: 11 Ոմանք. Եւ արկած զնա ’ի Դով՛՛: 13 Ոսկան. Մարտիւ պատերազմօղ ա՛՛: 14 Յօրինակին. Փակեաց նոքօք և ’ի նեղ արկ զցամաքն ’ի ծովէ և ’ի ցա՛՛... թողին ելանել: Ոմանք. Թողուին ելանել կամ մտանել: 15 Ոմանք. Առ թագաւորն երկրին: 16 Ոսկան. Ղուկիոս հիւպատոս: 18 Ոմանք.

տի թշնամեաց: 20Հաճոյ թուեցաւ մեզ առնուլ զվահանն
'ի դոցանէ: 21Արդ եթէ իցեն ոք արք անօրէնք փախուց-
եալք յերկրէ նոցա՝ 'ի ձեռս տաջիք Շմաւոնի քահանայա-
պետի. զի խնդրէ՛ վրէժ մարթացէ զվրէժ ըստ օրինացն իւր-
եանց: 22Եւ այսպէս գրէր առ Դեմետր արքայ, և առ Աթա-
ղա, և առ Արիարէթ, և առ Արշակ: 23Յամենայն գաւառս՝
որ ինչ բարւոք թուիցի Սպարտիացւոց, և 'ի Դեղոս, և 'ի
Միդոնիա, և 'ի Սիկիոնիա, և 'ի Կարադա, և 'ի Սամոն,
և 'ի Պամփիլա, և 'ի Լիդիա, և 'ի յԱղիկառնակոս, և 'ի
Ռոդոն, և 'ի Փասեղիդա, և 'ի Սիդէն, և 'ի Սարադոն, և
'ի Պորտնիա, և 'ի Կնիդոս, և 'ի Կիւպրոս, և 'ի Կիւրէն:
24Եւ 'ի պատճէն հրովարտակացն գրեցին առ Շմաւոն քա-
հանայապետ:
ԼԲ 25Եւ Անտիոքոս արքայ եկն պաշարեաց զԴովրա. և 'ի
վաղիւ անդր մատուցանէր առ նա մենքենայս, և ձեռն
արկանէ 'ի նա. և 'ի ներքս արգելեալ պաշարեալ պա-
հէր զՏրիփոն, և ոչ ել ումեք գոյր 'ի ներքուստ արտաքս՝
և ոչ մուտ արտաքուստ 'ի ներքս: 26Եւ յղեաց Շմաւոն
'ի թիկունս նմա արս ընտիրս մարտիկ պատերազմօղս՝
երկու հազար սպառազէնս, և պատարագս հանդերձեալս
յոյժ՝ ոսկի և արծաթ: 27Այլ անարգեաց զամենայն բանսն
որ ուխտեաց նմա, և օտարանայր 'ի նմանէ: 28Եւ առաք-
եաց նա զԱթենոբիոս՝ մի 'ի բարեկամաց իւրոց, խօսս 'ի
մէջ առնել ընդ նմա՝ և ասել. Դուք իշխեալ զօրացեալ
ունիք զքաղաքս թագաւորութեան իմոյ. զքաղաքն Յոպ-
պէացւոց, և Գազարացւոց, և զմիջնաբերդն Երուսաղեմի:
29Զսահմանս նոցա աւերեցէք դուք, և հարուածս մեծամեծս
հասուցէք 'ի վերայ երկրին նոցա, տիրեցէք դուք կողմանցն
բազմաց, և գաւառս բազումս հատէք զիմոյ տէրութեան:
30Արդ տուք 'ի դուրս զքաղաքս և զգաւառս և զկողմանս,
և զհարկս նոցուն. և որ ինչ միանգամ բռնութեամբ կալեալ
է ձեր 'ի մէնջ արտաքոյ սահմանացն Հրէաստանի: 31Ապա
թէ ոչ՝ տուք փոխանակ այնորիկ հինգ հարիւր քանքար
արծաթոյ, և զխափանած հարկաց քաղաքացն, որ ցայս-
օր խափանեցէք՝ այլ հինգ հազար քանքար: Ապա թէ ոչ՝
եկեսցուք հարցուք վանեսցուք զերկիրն սատակեսցուք: 32Եւ
իբրև եկն Աթենոբիոս բարեկամ արքայի յԵրուսաղէմ, ե-
տես զփառսն Շմաւոնի, և զսպաս զոսկւոյ և զարծաթոյ, և
զհանդերձս պատրաստութեան զօրաց բազմաց, յոտն կայր
առաջի նորա, և շքով տայր զպատգամ թագաւորին: 33Պա-
տասխանի ետ նմա Շմաւոն՝ և ասէ. Ոչ յերկիր օտար
ուրուք մտեալ եմք, և ոչ 'ի բաժին յուրուք տարապար-
տուց ձեռն բռնութեամբ մխեալ է. զվիճակս ժառանգու-
թեան հարցն մերոց վտարանդի լեալ յանպարտ թշնամեաց
տարապարտուց, 34քաջութեամբ ժամանակ գտեալ խնդրե-
ցաք: 35Այլ վասն Յոպպէացւոց քաղաքին, և Գազարայ զոր
դուքն խնդրէք, վնաս բազում գործեցին 'ի մէջ աշխար-
հին մերոյ, վրէժ խնդրեցաք. վասն այնորիկ տուժեսցուք
հարիւր քանքար: Եւ ոչ ետ նմա բանիցն պատասխանի.
36և դարձաւ բարկութեամբ առ թագաւորն, և պատմեաց
նմա զփառսն Շմաւոնի, և զամենայն պատրաստութիւն
զոր ետես սպասուց նորա: Եւ բարկացոյց յոյժ զթագաւորն:
37Եւ Տրիփոն փախեաւ յՈրթոսիա: 38Եւ թագաւորն գու-
մարեաց զԿենդէբոս ծովեզերեայց սպարապետն, և զօրս
բազումս հեծեալս և հետևակս ընդ նմա. 39պատուէր ետ
նմա զի բնակեսցէ դէմ յանդիման Հրէաստանի. և շինես-
ցեն զամուրսն 'ի պատրաստութիւն մարտի պատերազ-
մի ընդ զօրսն Իսրայէլացւոց: Եւ ինքն թագաւորն զհետ
էր Տրիփոնեայ: 40Խաղաց գնաց Կենդէբոս, եկն եհաս 'ի
կողմանսն Յամնեայ, և սկսաւ գրգռել զզօրսն, և մխել 'ի
Հրէաստան, գերել և սպանանել: Եւ շինեաց նա զԿեդրոն,
41և գումարեաց անդ հեծելազօրս բազումս, զի մխեսցին 'ի
Հրէաստան, և պաշարեսցեն զճանապարհս նոցա որպէս
հրամայն ետ թագաւորն:
16 Եւ ել Յովհան 'ի Գազարայ, և եկն պատմեաց Շմա-
ւոնի հօր իւրում. որպէս և գնայր Կենդէբոս: 2Եւ կոչեաց
Շմաւոն զերկոսին որդիսն զՅուդայ և զՅովհան, և ասէ
ցնոսա. Ես և եղբարք իմ և տուն հօր իմոյ՝ մարտ պատե-
րազմի տուաք ընդ թշնամիսն Իսրայէլացւոց, 'ի մանկութե-
նէ մերմէ մինչև ցայսօր ժամանակի, և աջողեցան գործքն
ամենայն 'ի ձեռս մեր, փրկել զբազումս զազգսդ Իսրա-
յէլացւոց: 3Բայց արդ ծերացայ, և դուք հերիք էք յամս
իմ, փոխանակ իմ և եղբօր իմոյ. արդ ելէք մարտերուք
'ի վերայ ազգիդ մերոյ. և զօրութիւն օգնութեանց յերկ-
նից եղիցի ընդ ձեզ: 4Եւ ընտրեաց նա յաշխարհէ ան-
տի իբրև քսան հազար հեծեալ սպառազէն, և խաղաց
'ի վերայ Կենդեբեայ: 5Եւ եկին ագան այն օր 'ի Մովդի-
իմ. ընդ առաւօտն կանխեալ՝ լինէին դաշտամուխ: Անդ
տեսանէին զօրս բազումս հեծեալս և հետևակս, որ գա-
յին ընդդէմ նորա. և հեղեղատ մի էր 'ի մէջ երկոցունց:
6Եւ ճակատեցաւ յանդիման նոցա ինքն և զօրքն: Իբրև
հայեցաւ ետես զզօրսն թէ դանդաղեցան անցանել ընդ
հեղեղատն, յառաջ՝ ինքն նախահատակեցաւ, հապա՝ զօրքն
միագունդ զկնի փողեցան: 7Եւ բաժանեաց յերկուս գունդս
զհեծելազօրն 'ի մէջ հետևակացն. և էր հեծելազօրն կա-
րի յոյժ: 8Փող հարին՝ խրախոյս բարձին, 'ի վերայ յար-
ձակեցան. 'ի պարտութիւն մատնեցաւ Կենդէբոս. և ան-
կաւ 'ի նոցանէ յաւուր յայնմիկ վիրաւորք բազումք: Եւ որ
մնացեալ էին փախստեայ անկանէին յամուրսն: 9Յաւուր
յայնմիկ խոց մնայր Յուդա. բայց Յովհան զհետ լինէր
փախստեայցն, մինչ ածէր արկանէր զնոսա 'ի կողմանս
Կեդրոնայ զոր շինեաց: 10Եւ մեկնեցին նոքա ընդ բրգունսն
'ի կողմանսն Ազովտայ: Եւ հրձիգ արար զնոսա. յայնմ ամ-
րի այրեցան արք 'ի հրոյ իբրև երկու հազար: Եւ ինքն
դարձաւ 'ի կողմանս Հրէաստանի խաղաղութեամբ:
11Եւ Պտղոմէոս Աբբուբեանց՝ էր կացուցեալ 'ի կող- ԼԳ
մանցն դաշտին յԵրեքով. և ունէր նա արծաթ և ոսկի յոյժ.
12զի էր նա փեսայ քահանայապետին: 13Եւ հպարտացաւ
'ի սիրտ իւր, մեծամտեաց 'ի խորհուրդս իւր, և կա-
մէր տիրել 'ի վերայ կողմանցն գաւառին. և խորհուրդ
խորհէր նենգութեամբ 'ի վերայ Շմաւոնի և որդւոց նո-
րա, ջնջել զնոսա 'ի միջոյ: 14Եւ Շմաւոն շրջէր 'ի կողմանս
գաւառացն. խնամէր և տեսանէր զպէտս նոցա. և եկն
էջ յԵրեքով, ինքն և Մատաթի և Յուդա՝ և որդիք նորա.
յամին հարիւրորդի եւթանասներորդի եւթներորդի, յամս-
եանն մետասաներորդի՝ այս ամիս շաբաթ է: 15Եւ ընկալաւ
զնոսա Պտղոմէոս 'ի մեծարանս նենգութեամբ 'ի քաղաքի
անդ Դովրայ զոր շինեաց, և արար ուրախութիւն կոչնոցն:
Անդ՝ 'ի դարանի առնէր արս: 16Եւ իբրև կերան և ար-
բին Շմաւոն և որդիք իւր, արբեցան. յարեաւ Պտղոմէոս
թաքուցելովքն հանդերձ, առին զէնս իւրեանց, և մտին 'ի
վերայ Շմաւոնի. և սպանին անդէն 'ի տաճարի անդ զնա
և զորդիս իւր՝ և զծառայսն որ ընդ նմա էին: 17Եւ ա-
րարին անօրէնութիւն մեծ. և հատուցին չար փոխանակ
ընդ բարւոյ: 18Եւ գրեաց Պտղոմէոս առ արքայն զի զօր 'ի
թիկունս արձակեսցէ նմա, զի 'ի ձեռս տացէ նոցա զքա-
ղաքսն իւրեանց՝ և զհարկն: 19Զկէսն արձակեաց 'ի կողմն
Գազարայ՝ բառնալ անտի զՅովհաննէս: Եւ գրեաց նա առ
զօրագլուխսն զի եկեսցեն՝ և առցեն 'ի նմանէ ոսկի և ար-

---

Վահան ոսկի 'ի Ռ քանքարէ:

19 Ոմանք. Խորհիցի 'ի վերոյ դոցա: Ոսկան. Ընդ քաղաքս դո-
ցա՝ և ընդ երկիր: 21 Ոսկան. Եթէ իցեն արք անօրէնք: Այլք. Յերկ-
րէ դոցա: 23 Ոմանք. Եւ որ ինչ բարւոք... և 'ի Սիդոնիայ և 'ի
Սիկոնիայ... և 'ի Պորտինայ... և 'ի Կիարոս: 24 Այլք. Եւ պատ-
ճէն հրովար": 25 Ոմանք. Եւ ձեռնարկէր 'ի նա: 26 Ոմանք. Եր-
կուս հազարս... և 'ի պատարագս հան": 27 Ոսկան. Զոր ուխտեաց
նմա: 28 Յօրինակին. ԶԱբենոբիոս՝ մի 'ի բա": Ոմանք. Խօսս 'ի մէջ
առնել նմա... զքաղաքսն Յոպպայեցւոց... Երուսաղեմի: 29 Ոմանք.
Հասուցէք դուք 'ի վերայ: 31 Ոսկան. Փոխանակ այնոցիկ հինգ...
զորս ցայսօր խափանեցիք՝ այլ ևս հինգ հա": 32 Յօրինակին. Եկն
Աթենաբիոս: 33 Ոսկան. 'Ի բաժին ուրուք... բռնութեամբ մխեալ
եմք: 35 Ոմանք. Վնասս բազում գործեցին 'ի մէջ աշխարհին մե-
րում: 39 Ոմանք. Զի բանակեսցէ դէմ յանդի": 40 Ոմանք. 'Ի կող-
մանս Յամնեայ:

16.2 Ոմանք. Զորդիսն զՅուդա և զՅովհաննան... մինչև յայսօր
ժամանակի, և յաջողէ"... զբազում զազգս Իսրայէլացւոց: 3 Ոմանք.
Հերիք էք յամս ձեր... արդ ելէք և մարտերուք... օգնականու-
թեան յերկնից: 4 Ոսկան. 'Ի վերայ Կենդեբոսեայ: 5 'Ի լու-ս. Գա-
յին ընդդէմ նոցա. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 6 Ոսկան. Հայեցաւ
և ետես զզօրսն եթէ... զկնի փոխեցան: Ո-ք ոմանք. Զկնի նորա
փողեցան: 8 Ոսկան. Եւ անկան 'ի նոցանէ: 9 Բազում-մք. Յամուրսն:
յայնմիկ խոց մնայր և Յուդա: 10 Ոսկան. Եւ մեկնեցան նոքա ընդ:
Ոմանք. Յայնմ այրեցան արք 'ի հրոյ իբրև արք եր": 11 Ոմանք.
Աբուբբեանց՝ էր կացուցեալ կողմանց: Ո-ք Ոսկան. Դաշտին Ե-
րիքովի: 13 Ոմանք. Եւ հպարտացաւ սիրտ իւր: 14 Ոսկան. Այս է
ամիս շաբաթու: 15 Ոմանք. 'Ի քաղաքի անդ Դովքեայ՝ զոր... անդ
'ի վարանի առնէր արս: 16 Ոմանք. Կերան արբին Շմաւոն որդիք
իւր՝ և արբե"... առին զզէնս իւրե": 17 Ոսկան. Փոխանակ բար-
ւոյ: 18 Ոմանք. Նմա. և 'ի ձեռս տացէ նոցա... և զհարկս: (19)
Զկէսս արձակեաց:

*ծախ և պարգևս բազումս: [20]Եւ այլս արձակեաց յԵրուսաղէմ, զի աճապարեսցեն՝ հասցեն առցեն զլեառն տաճարին: [21]Այր մի պնդեցաւ յառաջագոյն 'ի Գազարա, գոյժ ետ Յովհաննու՝ թէ կորեաւ հայր նորա և եղբարք իւր, և զքեզ ևս յղեալ է նենգութեամբ զի սպանցէ զքեզ: [22]Իբրև լուաւ՝ զարմացաւ յոյժ և յիմարեցաւ, և ըմբռնեաց զարսն զայնս և անդէն սպան զնոսա, իբրև գիտաց թէ նենգութեամբ եկեալ են կորուսանել զնա: [23]Եւ այլ ինչ բանք որ իցեն զՅովհաննէ՝ վասն մարտի պատերազմաց կամ այլոց քաջութեանց, կամ շինուածոց պարսպաց, կամ գործոցն բարութեան. [24]այն ամենայն գրեալ է 'ի մատեանս քահանայից, յորմէ հետէ եկաց նա քահանայապետ զկնի հօր իւրոյ:*

Կատարեցաւ Առաջին Մակաբայեցւոցն:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑՆ

*Բազումք 'ի հրէից իջին յեգիպտոս ոչ միայն 'ի մնացելոցն յորժամ գերեաց Նաբուքոդոնոսոր, այլ և յետ դարձին զկնի յոլով ժամանակի. նախ քան զցրուիլն նոցա յերեսաց երևելոյ Անտիոքայ՝ Պտղոմէոս Ղագոսեանց զբազումս 'ի հրէից խարդախութեամբ իջոյց յեգիպտոս, առ որս զայս գրեն 'ի Հրէաստանէ: Իսկ ժամանակս զոր յետ սկզբան գրոցս նշանակէ, թուի թէ նոյն է Յունացն զոր և Առաջին գիրքն 'ի կիր առնու. կամ թէ աստ զեգիպտացւոցն ասէ, որ տասն ամաւ յառաջ սկսանի յետ մահուն Աղէքսանդրի: Այլ Դեմետրիոս՝ Ասորւոց թագաւորեաց. յետ Անտիոքայ Եպիփանեայ և որդւոյ նորա: Իսկ Յասոն՝ եղբայր Ոնեայ առ Անտիոքաւ Եպիփանեաւ շորթեաց զքահանայութիւնն յՈնեայ, զոր յետոյ յիւրում տեղւոջ պատմէ: Քանզի զժամանակս զոր իսկզբան աստ դնէ ոչ զիրացն լինելոյ, այլ զգրոցս գրելոյ պարտ է իմանալ. վասն որոյ զկանուխ եղելոց իրացն՝ յետ ժամանակի գրելովս 'ի կարճոյ նշանակէ: Իսկ Արիստաբուղոս հրեայ և փիլիսոփոս վարդապետ էր Փիլոմետոր Պտղոմեայ Եգիպտացւոց արքայի, որ առ Անտիոքօք և Դեմետրեաւ Ասորւոց թագաւորօք, և ևս աւելի եկեաց. և որք ընդ Արիստաբուղեայ, առ որս զայս գրեն 'ի Հրէաստանէ: Նախ՝ 'ի կարճոյ յիշեցուցանեն զվիշտսն զոր հասոյց Անտիոքոս Եպիփանէս՝ կողոպտելով և պղծելով զտաճարն, զոր և Առաջին գիրքն պատմեաց, և այս գիրք յիւրում տեղւոջն պատմելոց է: Բայց զոր ասէս թէ սատակեցին զմտեալսն 'ի տաճարն զառաջնորդն գնդաւն, ոչ զԱնտիոքոս, այլ 'ի նորայոցն զայլ ոք: Իսկ իբրև պղծեաց զտաճարն Անտիոքոս յետ երից ամաց ամայութեանն՝ 'ի չուելն Անտիոքայ 'ի Պարսս՝ ուստի ոչ դարձաւ. իբրև յաղթեաց Յուդա զօրաց նորա՝ սրբեաց զտաճարն, զոր մօտ 'ի սկիզբն գրոցս յիշէ աստ 'ի կարճոյ. և դարձեալ յիւրում տեղւոջն պատմելոց է ըստ առաջնոյ գրոցն: Եւ զի յիշէ աստ 'ի սկզբանս զհանգամանս հրոյ սեղանոյն վառման, զայն ասէ, զոր յետ դարձի գերութեանն նախ քան զշինել զտաճարն՝ միայն սեղան կանգնեալ, ջրովն վառեցաւ հուրն, որպէս առ Մովսիսիւ և Սողոմոնիւ: Իսկ Նէեմին, զոր աստ ասէ, ոչ այլ Նէեմի է. կամ զՅեսուայ Յովսեդեկեանց ասէ, թերևս երկանուն էր, կամ մանաւանդ զԵզրէ է կարծել, զորմէ ասէ թէ զամենայն մատեանս մարգարէիցն և զպատմութիւնս 'ի մի վայր գումարեաց. ըստ որում և յետոյ Յուդա Մակաբէ յետ սրբելոյ զտաճարն՝ ժողովեաց զգրեանսն, զորս օրինակ տալ ասէ պատմագիրս որոց յեգիպտոս հրէից. զի ակն ունէին ժողովելոյ ցրուեալ հրէիցն: Յայս վայր հասուցեալ զպատմութիւնս, խոստանայ այժմ պատմագիրս վասն Յուդայի Մակաբեայ և եղբարց նորա. զորոց ոչ այս Յասոն 'ի հինգ գիրս բովանդակեալ զպատմութիւնս, 'ի մի գիրս աստ համառօտել վասն դիւրահասութեան: Սկիզբն առնէ 'ի ժամանակէն Ոնեայ քահանայապետի և Սելևկեայ Ասորւոց արքայի, որ մետասան ամ թագաւորեաց նախ քան զԱնտիոքոս Եպիփանէս: Զի զայս մետասան ամս կանխագոյն սկսանի այս պատմագիրս քան զԱռաջին գրոցն Մակաբայեցւոց, այսինքն՝ զժամանակս Սելևկեայ. ուստի իջուցեալ զգրոյցն յԱնտիոքոս Եպիփանէս, է ինչ զոր համաձայն Առաջնոյ գրոցն պատմէ, և է ինչ, զոր աւելի, որպէս զԵղիազարայ քահանայի, և զեւթն որդւոցն Շամունեայ, և զայլ քաջութիւնս Յուդայ մինչև ցսպանումն Նիկանովրայ 'ի պատերազմին, զոր մղեաց Յուդայ, ուր և աւարտէ զգիրս զայս. զի ոչ հասուցանէ զպատմութիւնս մինչև ցՅոփաթան և ցՇմաւոն՝ որք յետ Յուդայի տիրեցին:*

Գլուխք Երկրորդ Մակաբայեցւոց

*Ա. Աղօթք հրէաստանեայց 'ի վերայ հրէից որք յեգիպտոս:*
*Բ. Զի յաւուրս Դեմետրի գրեցին վասն չարեացն Յասոնեայ որ առ Անտիոքաւ, և պղծելոյ զտաճարն. զոր սրբեալ տօնեցին, զի և նոքա տօնեսցեն զքսան և հինգն Քասղև ամսոյ:*
*Գ. Վասն հրոյն զոր թաքուցին 'ի ժամանակի գերութեանն և տապանակին. և թէ որպէս գտաւ և վառեցաւ 'ի սեղանն յետ դարձին, և զի ցանգեաց Կիւրոս զտեղին:*
*Դ. Զի 'ի մի՛ գիրս աստ ժողովէ զհինգ գիրսն Յասոնի վասն Մակաբեանց:*
*Ե. Զի զառաջինն պատուէր զտաճարն Սելևկիոս արքայ, իսկ 'ի բանսարկելոյ անօրէն Սիմոնի՝ խորհրդով Ապողոնի, առաքեն զհեղիոդորոս կողոպտել զտաճարն. և եթէ զինչ անցք յԱստուծոյ անցին ընդ հեղիոդորոս: Եւ զի դեռ ևս Սիմոն ընդ հակառակս էր Ոնիայ արդարոյ, մինչև արգելուլ զնա յամուրն Դափնէ:*
*Զ. Թագաւորեաց անօրէն Անտիոքոս, 'ի նմանէ Յասոն եղբայր Ոնիայ ա՛ռ իշխանութիւն չքահանայութեան. և զհրէայսն ինքն 'ի հեթանոսական օրէնս մարզէր. զոր և Առաջին գիրքն պատմէ:*
*Է. Անտիոքոս յետ յաղթելոյ Փիղոմետոր Պտղոմէի իբրև դարձաւ՝ եհան զքահանայութիւնն 'ի Յասոնայ և ետ Մենեղաւեայ եղբօր Սիմոնի, և Յասոն փախստեայ յԱմոնացիսն անկանէր:*
*Ը. Անօրէն Մենեղաւոս կաշառեաց զԱնդրոնիկոս և սպան զՈնիա. իսկ 'ի բողոքել բազմաց վասն այնր առ Անտիոքոս՝ հատին զգլուխն Անդրոնիկեայ:*
*Թ. Զի 'ի ձեռն Լուսիմաքեայ մեծամեծ չարիս գործէր Մենեղաւոս. ընդ որում 'ի սուտ համբաւ զԱնտիոքայ վստահացեալ Յասոն, 'ի մարտ եկեալ ընդ Մենեղեայ, մեծամեծ չարեաց պատճառք հրէից լինէին. յորում և Յասոն փախստեայ յեգիպտոս սատակիւր:*
*Ժ. Մեծամեծ չարիքն զոր հասոյց Անտիոքոս հրէից և տաճարին սպանմամբ և վաճառելով, և յաւուր շաբաթու կոտորմամբ:*
*ԺԱ. Յուդա Մակաբէ փախստեայ լինի յանապատ. և Անտիոքոս բռնադատէր զազգն 'ի կռապաշտութիւն:*
*ԺԲ. Վկայաբանութիւն Եղիազարու. և եւթն որդւոցն Շամունի:*
*ԺԳ. Զօրս ժողովեալ Յուդա հարկանէր զթշնամիսն ընդ Տիմոթեայ և Գէորգեայ, և Նիկանովրայ ճակատ տուեալ յաղթէր. յորմէ Նիկանովր փախստեայ եղեալ՝ պատմէր զօգնութիւնն Աստուծոյ առ զօրսն հրէից:*
*ԺԴ. Անտիոքոս վատթարեալ դառնայր 'ի Պարսից սպառնալով հրէից. և 'ի բարկութենէ Աստուծոյ որդնեռա՛ց ախտիւ հարեալ, գրէ աղաչանս առ Եբրայեցիս. և ինքն դառն մահուամբ սատակի:*
*ԺԵ. Սրբեաց Յուդա զտաճարն յետ երից ամաց պղծութեանն. զութ օր տօնելով ըստ աւուրց տաղաւարահարացն:*
*ԺԶ. Թագաւորեաց Անտիոքոս Անտիոքեան. և Մակաբէ եհար զԵդովմայեցիս և քակեաց զամուրս նոցա: Եւ ընդդէմ Տիմոթեանց ճակատեալ՝ երկնաւոր նիզակակցօք յաղթէր, և զՏիմոթէոս կալեալ սպանանէր:*
*ԺԷ. Գա՛յր Լիւսիաս ութ բիւրուք 'ի վերայ Երուսաղեմի. և անդէն հրեշտակ հասեալ՝ զօրացան Մակաբեանք. Լիւսիաս մազապուր փախստեայ եղեալ՝ միջնորդ հաշտութեան առ թագաւորն՝ և խաղաղութեան թղթոց առիթ հրէիցն լինէր, զոր և հռոմայեցիք որ անցին առ Անտիոքոս զնոյն հոգացան:*
*ԺԸ. Իշխանքն Անտիոքու ոչ տային հրէիցն հանգչել. և Յոպպէացիք դաւաճանեալ զհրէայսն որ ընդ ինքեանս 'ի ծով ընկլուզին. իբրև գիտաց Յուդա, այրեաց զնաւահանգիստն Յոպպէացւոց և զՅամնէացիս:*
*ԺԹ. Դիմեալ Յուդա 'ի վերայ Տիմոթեայ՝ արար ընդ հանդիպեալ Տաճիկսն խաղաղութիւն, և զքաղաք մի Դեկասպ անուն չարաւ սատակեաց, և զզօրսն Տիմոթեայ հարեալ՝ զՏիմոթէոս ձերբակալեաց. իսկ նա խոստացեալ՝ բարի առնել հրէից զերծաւ. և ստեալ ուխտին չար ընդ բարւոյ հատոյց:*
*Ի. Հարկանէ Յուդա զԵփրոն քաղաք, յորում էր Լիւսիաս. և ապրեցուցանէ զՍկիւթուպօլիս զերախտաւորս հրէից:*
*ԻԱ. Պատերազմեալ Յուդայ ընդ Գէորգեայ՝ բազում կոտորածք եղեն, և 'ի թաղելն զդիակունս հրէիցն՝ գտին 'ի սպանեալսն՝ յուռութս ուլունս և այլ բժժանս հեթանոսաց. և 'ի յոյս յարութեան վասն մեղացն այնոցիկ տայր պատարագս յԵրուսաղէմ:*
*ԻԲ. Հրէաստան հասեալ Անտիոքոս՝ զՍիմոն հրեայ մոխրաւ հեղձուցանէ, և ինքն կամէր ջնջել զհրէայս. զորոյ զդէմ ունի հզօրապէս Յուդա, մինչև լուեալ Անտիոքայ զապստամբելն Փիլիպպոսի՝ հաշտեալ ընդ հրէայս պատուեա՛ց զտաճարն և զՅուդա, և դարձաւ անդրէն:*
*ԻԳ. Դեմետր արքայ դիմեալ 'ի վերայ Անտիոքու, Աղկիմոս մերժեալն 'ի քահանայութենէ, չարախօսէր առ նա զՅուդայէ. և նա առաքէ զՆիկանովր ըմբռնել զՅուդա, և ունել զաշխարհն:*

21 Այլ. Զի սպանցեն զքեզ: 'Ի վախճանի ոմանք. Կատարեցաւ Գիրք Առաջին Մակաբայեցւոց. Եւ ոմանք. Կատարեցաւ Առաջին գլուխս Մակաբէացւոց:

Հազարս: Սկսաւ ձեռն 'ի գործ արկանել, և սկիզբն առ-
նել գործոցն չարութեան. արամբ միով որ խուժադուժ
ևս էր տեսանելով քան զմտօքն թանձրութեան: 41 Իբ-
րև տեսին զկիսիմաքեայ զդաւն և զնենգութիւն որ ե-
ղև՝ խռնեցան վաղվաղակի, ձեռն 'ի գործ առնէին, ոմն
վէմս, ոմն վիրգս, կէսքն զաւազն զխիճն հողախառն առ
հասարակ յարձակելոցն 'ի վերայ արկանէին: 42 Զոմանս
վիրաւորս, զոմանս կառափնատս արձակէին, զբազումս
սպանանէին, և զամենեսին առ հասարակ 'ի փախուստ
դարձուցանէին. զնոյն ինքն զսեղանազերծ զտաճարակա-
պուտ՝ զգանձի տամբն արկանէին փախստեայ: 43 Վասն
այսր ամենայնի լինէին դատաստանք ընդ Մենեղայայ:
44 Իբրև եկն էջ թագաւորն 'ի Ծուր, յանդիման նորա իսկ
էին դատաստանք. զի եկին արք երեք 'ի ծերակոյտ ժողո-
վրդենէ անտի ցուցանել զիրաւունս: 45 Իբրև 'ի պարտու-
թիւն մատնեցաւ Մենեղաւոս, խոստացաւ գանձ բազում
տալ Փտողմեայ, զի հաճեսցէ զմիտս նորա: 46 Վասն այսո-
րիկ առեալ զթագաւորն մեկուսի՝ իբրև զբօսանաց պատ-
ճառաւ՝ շրջեաց զմիտս նորա. 47 զամենայն չարեացապարտ
Մենեղաւոս արձակել 'ի պարտեաց անտի: Եւ զայն տա-
ռապեալս, որ թէպէտ առաջի Խաղտեաց դատ վարէին,
իրաւ գտանէին, արձակեալք՝ գտեալք անպարտք երթա-
յին, զնոսա մահապարտս արարին: 48 Եւ վաղվաղակի զան-
իրաւութեան պատիժս զնոքօք արկանէին, որ վասն քա-
ղաքին և գնդին և սպասուն սրբութեան գուժել եկեալ է-
ին: 49 Եւ վասն այսր ամենայնի Ծուրացիքն չարատեացք
առատապէս սրտացաւութեամբ հանդերձեցին զնոսա, 50 և
յղարկեցին զՄենեղաւոս վասն իշխանացն ռըժդութեան և
ագահութեան: Հաստատեալ կայր չարախօսութիւն մեծ,
եղեռն վնասու քաղաքացւոցն իւրոց կացուցանէր:
5 Եւ ժամանակօք երկրորդ գալստեանն Անտիոքու յերկիրն
Եգիպտացւոց առաքէր 'ի կողմանցն Անտիոքացւոց: 2 Իբ-
րև դէպ լինէր ընդ ամենայն քաղաքն յաւուրց քառասուն
երևել ընդ երկինս և ընդ երկիր, արս հեծեալս տիգաւորս,
'ի զարդ ոսկի 3 վառեալս՝ զարդարեալս, արշաւեալս յար-
ձակեալս խառնեալս ընդ միմեանս. անդ էր լսել թընդիւն
վահանաց, շկահիւն զաղեղանց, շողիւն սուսերաց, շաչիւն
նշանաց, շառաչիւն նետից, զփայլիւն զոսկեղէն վառելոց:
4 Եւ ամենեքեան անկեալ աղաչէին զայն նշանս 'ի բա-
րի ինչ կատարել: 5 Իբրև շռինդն իմն յանկարծուստ համ-
բաւի հարկանէր, իբրև թէ Անտիոքոս փոխեալ իցէ յաշ-
խարհէ. առնոյր Յասոն ոչինչ պակաս քան զքսան հա-
զար վառեալ, և յարձակէր 'ի վերայ քաղաքին. և նո-
քա վասն յանկարծ դաւոյն 'ի պարսպէ անտի մերժէին:
Եւ Մենեղաւոս արշաւեալ 'ի քաղաք անդր հասանէր.
6 ուր Յասոնն մոլեգին յանխնայ անկեալ գործէր մեծա-
մեծ կոտորած քաղաքացեացն իւրոց, իբրև 'ի մէջ թշնամ-
եաց գործէր. և ոչ ածէր զմտաւ զտոհմային քաղաքակից
ընկերութեանն բարեկանդանութիւն, զի 'ի թշուառութիւն
դարձուցանէր. այլ համարէր իբրև 'ի մէջ թշնամեաց ան-
կեալ սպէպ ստէպ տագնապել, և 'ի վերայ միատոհմի
գնդին իբրև 'ի վերայ թշնամւոյ նշան յաղթութեան կանգ-
նել: 7 Ապա իշխանութեան ինչ ոչ կարաց հասանել, բայց 'ի
կատարած զամօթ դաւոյն ժառանգէր. և ինքն փախստ-
եայ անկանէր 'ի կողմանս Ամոնացւոց. 8 յորմէ չարաչար
կատարած վախճանի ընդունէր, արգելեալ 'ի բանտի Ա-
րետայ Արաբացւոց արքայի: Դարձեալ 'ի քաղաքէ 'ի քա-
ղաք փախստեայ լինէր, ատելի հալածական յամենեցունց՝
իբրև ապստամբ յօրինացն, պղծեալ գարշեցեալ՝ իբրև գա-
ւառի և քաղաքի և գնդի՝ մատնիչ և դահիճ, յերկրին Ե-
գիպտացւոց եռացեալ թքաւ: 9 Բազումս և անթիւ յիւրմէ
աշխարհէ օտարացոյց, և ինքն օտարացեալ 'ի մէջ օտա-
րաց կորեաւ. 10 անսուգ, անխնամ, անհանդերձ, և գերեզ-
մանացն հայրենեաց չեղև արժան:
11 Իբրև ազդ եղև արքային վասն իրացն եղելոց, ա- Ժ
պըստամբ համարեցաւ թագաւորն զհրէաստան յիւրմէ.
վասն այսորիկ փութացաւ գնաց յերկրէն Եգիպտացւոց
գազանացեալ սրտիւ, եկն՝ առ զքաղաքն 'ի սուր սայր
սուսերի՝ և 'ի տէգ նիզակի. 12 և հրաման ետ զօրացն՝
որ 'ի բուռն անկանիցին՝ յանխնայ կոտորեսցին, և որ
յապարանս ամրասցին՝ անդէն 'ի ներքս սատակեսցին:
13 Եւ անդ լինէր տղայոց և ծերոց առ հասարակ կոտորած,
կանանց և մանկանց առ հասարակ սատակումն, կուսից
և կուսանաց առ հասարակ կոտորած: 14 Եւ ութ բեւր յայն
երիս աւուրս միանգամայն կոտորեցին. և չորս բեւրս 'ի
վաճառի ոչինչ պակաս լաւութեամբ քան զսպանեալսն վա-
ճառեցին: 15 Եւ իբրև այսու չարեօք ոչ յագեցաւ, իշխեաց
ձեռնամուխ լինել 'ի սուրբսն ամենայն աշխարհաց, իշխեաց
մտանել 'ի տաճար անդր. առաջնորդ 'ի ձեռն ունէր զՄե-
նեղաւոս, որ օրինացն և աշխարհին և գնդին մատնիչ
և դահիճ եղեալ էր: 16 Եւ պիղծ և անօրէն ձեռօք զսուրբ
սպաս սեղանոյն, և որ յայլոց թագաւորաց և յայլոց քա-
ղաքաց եդեալ էր 'ի սրբութիւն՝ յաճումն և 'ի փառս տեղ-
ւոյն, զայն առեալ պղծոց բաշխէին: 17 Թերևս հպարտացեալ
յամառեալ էր 'ի միտս իւր Անտիոքոս՝ և ասէր. Եթէ վասն
մեղաց անօրէնութեան բնակչաց քաղաքիս բարկացեալ է
սոցա Տէր, վասն այսորիկ եղեն արհամարհանք 'ի վերայ
տեղւոյն սրբութեան: 18 Զի եթէ ոչ մեղօք մեծօք պաշարեալ
էին, լինէր որպէս հեղիոդորոսն որ առաքեցաւ 'ի Սելևկեայ
արքայէ. զի նա առաքեցաւ համար առնել գանձուն. և սա
արդեաք վաղվաղակի մտեալ՝ կործանէր 'ի հպարտութենէ
իւրմէ: 19 Այլ ոչ վասն տեղւոյն զազգն, այլ վասն ազգին
զտեղին ընտրեաց Տէր: 20 Քանզի և տեղին ինքն ժառան-
գեաց զազգին խոտորութիւն, որպէս և յետոյ բարեացն
կցորդ լինիցի, 'ի միւսանգամ հաճել մեծի Աստուծոյ փա-
ռօք ուղղութեան: 21 Այլ Անտիոքոսն ութհարիւր քանքար 'ի
վերայ ինն հարիւրոյն բարձեալ բերէր 'ի տաճարէ անտի.
արագ հասանէր 'ի քաղաքն Անտիոքացւոց, հպարտաց-
եալ մտօք համարէր զծով՝ 'ի ցամաք, և զցամաք՝ 'ի ծով
փոփոխել: 22 Եւ անդ թողոյր վարդապետս խիստս, չար-
չարել զմնացորդսն Երուսաղեմացւոց, և զՓիլիպոս յազգէ
Փրանգ, բայց 'ի բարուց խժդժագոյն ևս էր քան զայն որ
եթող զնա անդ: 23 Եւ 'ի Գարգարիզին՝ զԱնդրոնիկոս. և
'ի վերայ սոցա զՄենեղաւոս, որ չարաչար ևս քան զնո-
սա 'ի վերայ հասեալ դատէր զքաղաքն: 24 Բայց զի ու-
նէր սակաւ մի գումն ընդ հրէայսն, առաքեաց նա մաշուէ
զԱպողոնիոս երկուք բիւրուք զօրօք, թող զհազարն զառա-
ջին. զի զամենայն մարդ հասարակաչափ կոտորեսցէ, և
զկանայս և զմանկունս վաճառեսցէ: 25 Սա իբրև եկն յԵրու-
սաղէմ, նախ զառաջինն խաղաղութեամբ դաւով եմուտ, և
եղև անդ մինչև յօրն սուրբ՝ յօրն շաբաթուց. իբրև յաւուրն
շաբաթուց եգիտ զհրէայսն դատարկացեալս, հրաման ետ
զօրացն իւրոց վառել: 26 Որ միանգամ 'ի զնին տեսլեանն
եկին, սուր 'ի վերայ եդեալ կոտորեաց. և ընդ քաղաքն
ընդ ամենայն զինու հանդերձ այսր անդր վառեալք ընթա-
նային, առ հասարակ տարածեալ դիթաւալ կացուցանէին:
27 Եւ Յուդա Մակաբէ՝ որ տասներորդն եղեալ էր, փա- ԺԱ
խըստեայ լինէր՝ յանապատ ելանէր, գազանակեաց կեանս
'ի լերինս անցուցանէր. և այնպէս զնդաւն որ ընդ նմա
էին խոտաբուտ կերակուր կերակրեալ անցուցանէին զժա-

---

համարին էին:

40 Ոմանք. Արս իբրև վեց հազարս... ձեռն 'ի գործ առնել... զմտօքն թանձրութեամբ: 41 Ոմանք. Ձեռն 'ի գործ արկանէին, ոմն վէմ: 42 Ոմանք. Եւ զամենեսին հասարակ: 44 Ոմանք. 'Ի ծերակոյտ ժողովրդենէն: 45 'Ի լուս. Զմիտս թագաւորին: 46 Ոմանք. Զբօսանաց պատճառանաւ: 47 Օրինակ մի. Զամենայն չարեաց անպարտ զՄենեղաւոս: Ոմանք. Իրաւունս գտանէին ար": 48 Ոմանք. Զանօրէնութեան զպատիժսն զնոքօք: 49 Ոմանք. Սրտցաւութեամբ: 50 Ոմանք. Եւ յուղարկեցին զՄենեղաւոս վասն իշխանացն գժդութեան... մեծեղեռն վնասու: 5.1 Ոմանք. Եւ ժամանակօք երկրորդ գալստեանս: Անտիոքոս յերկիրն ե": 2 Ոմանք. Իբր դէպ լինէր: Ոսկան. Յաւուրս քառասուն: 5 Ոմանք. Իբրև շռինդն իմն... իբրև Անտիոքոս փոխեալ յաշխարհէ... քան զհազար վառեալ: 6 Ոմանք. Քաղաքացւոցն իւրոց... ընկերութեան բարեկամութիւն... 'ի մէջ թշնամեաց անկանել... միատոհմն գնդին:

8 Ոմանք. Յումմէ չարաչար կատարած... պղծեալ գարշացեալ... եռացեալ թքեաւ: Ո–ր Ոսկան. Հեռացեալ թաքեաւ: 9 'Ի լուս. 'Ի մէջ օտարաց մեռաւ. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 10 Ոմանք. Չեղև հայրենեացն արժանի: 11 Ոմանք. Եւ 'ի տէգս նիզակաց: 12 Ոմանք. 'Ի բուռն անկցի՝ յանխնայս կոտոր"... անդէն սատակեսցին: 15 Ոմանք. 'Ի սուրբս ամենայն աշ"... որ օրինաց աշխարհին... մատնիչն և դա": 17 Ոմանք. Հպարտացեալ յիմարեալ էր 'ի... և անօրէնութեան քաղաքիս բնակ": 18 Ոմանք. Համար առնել գանձին, զի սա արդեւք: 20 Ոմանք. Եւ տեղին ինքնին... կցորդ լինիցին... մեծի փառօք ուղղութեամբ: 21 Ոմանք. Արագ արագ հասանէր 'ի քա": 22 Ոմանք. Յազգէ Փրանք. կամ Փրանքս. և նոր օրինակ մի՝ Ֆռանկ: 23 Օրինակ մի. Եւ 'ի Գարգիզին զԱնդր": Ո–ր Ոսկան. և 'ի Գարիզին: 24 Ոմանք. Երկու բիւրուք. թող զհազար զօրն զառաջինն. զի զամենայն մարդ հասակաչափ կո": 25 Ոմանք. Եւ իբրև յօրն շաբաթուց եգիտ:

նել յԵրուսաղէմ, մատուցանել պատարագս վասն մեղացն.
կարի բարւոք իմաստութեամբ. զի վասն յարութեան մեռե-
լոց խորհէր առնել զոր առնէր: 44Զի եթէ յարութեան ակն
ոչ ունէր, անկելոցն 'ի պատերազմէն զո՛ւր տարապարտուց
լինէր վասն մեռելոցն աղօթս մատուցանել: 45Այլ հայէր նա
ուղիղ, 'ննջեցելոցն գեղեցիկ պահեալ զշնո՛րհս պարգեւաց.
46արութեամբ քաջութեամբ վասն մեռելոցն զմտա՛ւ ածէր
մա՛յց լինել մեղացն թողութեան:

ԻԲ 13 Յամին հարիւրորդի քառասներորդի իններորդի. դէպ
եղեւ առ ժամանակօքն Յուդայ, եկն Անտիոքոս բազում զօ-
րօք 2Լիւսիաւ հանդերձ 'ի հրէաստան՝ մետասան բիւրու
վահանաւոր զօրօք. հինգ հազար եւ երեք հարիւր հեծելազօր
գնդաւ, եւ քսան եւ երկու փղօք. երեք հարիւր գերանդաւէն
կառօք: 3Անկեա՛լ էր եւ Չիմոն 'ի նոսա 'ի խէ՛լս կերպա-
րանեալս՝ իբրեւ թէ բարեխօ՛ս էր 'ի խաղաղութիւն աշխար-
հին, բայց սրտի՛ խորհրդով ցանկացեալ էր քահանայապե-
տութեան աշխարհին: 4Իսկ արքայ՝ արքայից արքայ, յո՛յժ
յուզեաց զսրտմտութիւն բարկութեան Անտիոքայ 'ի վե-
րայ անօրէն Չիմոնի. մանաւանդ Լիւսի՛ եւս ցուցանէր, թէ
սա՛ է պատճառք ամենայն չարեաց որ լինին յաշխարհի
անդ. հրաման տայր ըստ օրինի 'ի նմին տեղւոջ կալեալ
կորուսանել: 5Եւ էր 'ի տեղւոջ անդ աշտարակ մի յիսուն
կանգուն շինեալ՝ լի՛ մոխրով, գործած բոլորշի՛ յամենայն
կողմանց. 6դուռն առ 'ի շեղ 'ի ներքսակողմ 'ի մոխի՛ր անդ
առ լեգ շինեալ, յո՛ր արկանէր զփասակար տաճարին. եւ
կամ զպա՛րտ այլոց մեծամեծ չարեաց ընկենուլ, հասարակ
հաւանութեամբ շուրջ լինել մէն ձե՛ռն մատուցեալ: 7Այսպի-
սի օրհասաւ հրամայեցին զանօրէն Չիմոն 'ի միջո՛յ ջնջել.
8զի մի՛ հողոյ եւ մի՛ պատանաց յիւրում բնակութեան աշ-
խարհին արժանի լիցի: Քանզի բազում չարիս էր ցուցեալ
նորա 'ի սեղան անդր, ուր հուրն սրբութեան կայր՝ եւ
աճիւնն. վասն ա՛յնորիկ մոխրահեղձո՛յց մահու զկատարած
իւր վախճանէր: 9Անտիոքոս արքայ՝ առաւել վայրենացեալ
խորհրդովք գայր՝ պատրաստեալ չարաչար տանջանս քան
որ առ հարբն եղեն՝ հասուցանել 'ի վերա՛յ հեբրայեցւոց:
10Իբրեւ զա՛յն զգայր Յուդա, պատուէր տայր ժողովրդոցն
ցայգ եւ զցերեկ կարդալ առ Տէր. զի որպէս այլ երբեք,
եւ արդ օգնական լիցի այնոցիկ, 11որ 'ի հարցն օրինաց
եւ 'ի սրբոյ տաճարէն մերժե՛լ կամին. եւ մի՛ յանձն առ-
ցէ հեթանոսաց անօրինաց 'ի ձե՛ռս տալ: 12Իբրեւ ամենե-
քին առ հասարակ միաբանութեամբ յա՛յսմ ուխտի կային
արտասուօք եւ պահովք, առաջի անկեալ թաւալէին ան-
պակաս զերիս աւուրս, մխիթարեա՛ց զնոսա Յուդա անձի՜ն
զգալ: 13Եւ ինքն առնոյր զծերակոյտ ժողովրդեանն առան-
ձինն՝ 'ի խորհուրդ մտանէր. Պնդեսցուք ասէ զքաղաքսդ,
մինչեւ՛ զօրաց թագաւորին 'ի ներքս 'ի հրէաստան մտեալ
է: 14Եւ մեք ելցուք քաջութեամբ կամօքն Աստուծոյ, մահո՛ւ
չափ մարտնչել 'ի վերայ օրինացն, քաղաքին եւ տաճա-
րին՝ աշխարհի՛ եւ տէրութեան: Իբրեւ զա՛յն ասէր՝ պնդէ-
ին վաղվաղակի 'ի կողմն Մովդիիմ քաղաքի զօրօքն հան-
դերձ: Բանա՛կ հարկանէր. 15զնշան բաշխէր. յանձն առ-
նէր Աստուծոյ զանձն եւ զզօրսն, եւ զյաղթութիւն գնդին:
Եւ առնոյր զԱրիստիդէս ընտի՛ր ընտիր երիտասարդ վա-
ռելովք. անկանէր գիշերի ընդ բանակս թագաւորին 'ի
ներքս զսրահակօքն, կոտորէր զգիշերապահ դռնապահն
իբրեւ չորս հազար այր. եւ զգլխաւոր փղացն փղապետան
հանդերձ անդէն սպանանէր. եւ այնպէս զդռնապահսն
տապաստ արկեալ այսրէն դիմէր: 16Յա՛յնմ ժամանակի
զամենայն բանակն խռովութեամբ եւ դողութեամբ լնո՛յր:
17Եւ ամենեքին լքեալք եւ լուծեալք եւ սպառեալք եւ տա-
րակուսեալք՝ յա՛յն առաւօտն հասանէին: 18Իսկ թագաւորն՝
վասն յերկնի՛ց օգնականութեանն, այսպիսի ճաշակս քա-
ջասրտութեան քաջութեան զեբրայեցւոց գնդին առնոյր՝
խելօք, միւսանգամ փո՛րձ փորձէր. 'ի կորէս ելանէր 19եւ 'ի
Բեթսո՛վր ապստակեալ, պահ պանէշ պաշարումն մա-
տուցանէր: Սակայն եւ անդ յարձակեալ մարտուցեալ 'ի
պարտութիւն մատնէր: 20Զի որ 'ի ներքս անդ էին, ինքնին
Յուդա՝ նետ եւ զէն եւ համբարս ընդ աներեւո՛յթ կող-
մանս 'ի ներքս մատուցանէր: 21Այսց խորհրդոց առ թշնա-
մի անդր՝ Ռոդոկ անուն 'ի հրէից գնդէ անտի մա՛տն եւ
գուշա՛կ լինէր. քննեցաւ, խնդրեցաւ, գտաւ, պատժեցաւ, 'ի
սո՛ւր սպառեցաւ: 22Իբրեւ ա՛զդ զգուշութեան եղեւ ամրա-
կանա՛ցն բռնութիւն թագաւորին. սկսա՛ւ թողեալ զզօրու-
թիւնն, նենգա՛ւ ջանալ ընդ ամրականսն. դաշինս կռէր, եւ
յառնո՛ւլ առնէր զամուրսն: 23Անդէն անդ՛ուստ յարձակէր 'ի
կողմն Յուդայեանց. եւ յերկոցունց կողմանց 'ի պարտու-
թիւն մատնեալ վատթարեա՛լ գտանէր: Ապա ա՛զդ եղեւ նմա
մոլեգին գնացքն Փիլիպպեայ, զի բռնութեամբ տիրաբար
'ի վերայ իրացն արքունի հասեալ շրջէր յաշխարհին. լուծաւ
լքաւ տրտմեցաւ, աղաչեաց զեբրայեցիս՝ եւ հաւանեցաւ նո-
ցա. ո՛ւխտ եդ, երդմնի՛ արար՝ զամենայն իրաւունս նո-
ցա անդրէն դարձուցանել, զխաղաղութիւն հաշտութեան
'ի մէջ հաստատեաց. մատո՛յց պատարագ, եւ մեծարեաց
զտաճարն. 'ի գո՛ւթ սէր քաղցրութեան մարդասէ՛ր լինէր
ընդ ամենայն տեղիս նոցա: 24Փառաւորեաց զՄակաբէ, եւ
ճոխագո՛յն եւս կացոյց զնա 'ի վերայ նոցա քան զառաջինն:
Եւ եթող անդ սպարապետ 'ի վերայ աշխարհին զհեգե-
մոնիդէս 'ի Դովրայ մինչեւ 'ի Գերար. 25ինքն եկն եմուտ
'ի Պտղոմայիս: Բարկացեալ յո՛յժ էին քաղաքացիքն վասն
ուխտիցն հաշտութեան. ո՛չ հանդարտէին, այլ 'ի նմին խռո-
վութեան կային, զի անդրէն լուծցէ զհաշտութիւն հաւանու-
թեանն: 26Մատեաւ ինքնին Լիւսիաս, առաջի եկաց իմաս-
տաբար, հաճեաց զմիտսն, մեղմացոյց: Դա՛րձ արար անդ-
րէն 'ի կողմանս Անտիոքացւոց: Ա՛յն արշաւան ապստակի
թագաւորին՝ այսպիսի դարձիւ վճարեցաւ:

14 Յետ երից ամա՛ց ժամանակի դէպ եղեւ դիմել Դեմետ- ԻԳ
րեայ Սելեւկեանց 'ի վերայ հեբրայեցւոց ընդ երե՛ք քա-
ղաքեան նաւահանգիստ՝ մեծա՛ւ գնդաւ, բազում զօրօք 'ի
ներքս 2յաշխարհամիջի անդր արշաւել, մերժել զԱնտիո-
քոս եւ զնորա՛ն եղբայր Լիւսիաս: 3Աղկիմոս ոմն անուն
էր քահանայապետ լեալ յառաջ, կամօք իւրովք պղծեաց
զառաջինն խառնակութեամբ ժամանակաց: Խորհեցաւ 'ի
միտս իւր եւ ասէ թէ՝ Որպէս եւ է, սակայն անհնա՛ր է
նմա գտանել փրկութիւն, եւ ո՛չ այլ գոյր նմա մերձե-
նալ առ սեղանն սրբութեան: 4Եկն եկաց առաջի արքա-
յի Դեմետրեայ 'ի հարիւրորդի յիսներորդի յառաջնում ա-
մի, մատուցանէր նմա պսակս ոսկիս եւ արմաւենիս, եւ
ոստս թաւս 'ի պատիւ մեհենին: Եւ զայն օր լո՛ւռ լի-
նէր. 5բայց ժամանակի՛ սպասէր իւրում անմտութեանն
օգնա՛կան գտանելոյ: Իբրեւ դէպ եղեւ օր մի 'ի խորհուրդ
կոչել զնա Դեմետրեայ. սկսաւ հարցանել զնա արքայն.
Յի՞նչ օրէնս, յի՞նչ կամս, յի՞նչ խորհուրդս կան ընդ մեզ
հեբրայեցիքդ՝ որ 'ի հրէաստանի են: 6Այսպէս ետ պա-
տասխանի. Ասիդացիքդ որ անուանեալ են 'ի մէջ հրէ-
իցդ՝ որոց սպարապետ եւ զօրավար Յուդա Մակաբէ համ-
բարձեալ է, զօրաժողո՛վ են՝ 'ի մա՛րտ պատերազմի պատ-
րաստեալ են, յուզեն հանապազ զժողովս նոցա. եւ ո՛չ տան

---

Վասն նորին իսկ մեղաց:

43 Ոմանք. Խորհրդովք ԺԲ-ան հազար սատեր... մեռելոց խորհեալ առնէր: 44 Ոսկան. Անկելոցն 'ի պատերազմի: 46 Ոմանք. Զմտաւ ածեալ այց լի՛: 13.2 Ոմանք. Բիւրաւ վահանաւոր զօրու, եւ հինգ հազար... եւ Յ գերանդա՛: 3 Ոմանք. Իբրեւ բարեխօսէր... բայց 'ի սրտէ խորհրդով ինքն անցեալ էր քահ՛: 4 Ոսկան. Իսկ արքայից արքայ՝ յոյժ: Ոմանք. Եթէ սա էր պատճառք... որ լինի յաշխարհի անդր... կալեալ կորուսանէր: Յօրինակին. 'Ի նմին տարւոջ կալեալ կո՛: 6 Ոմանք. Դուր քաշել 'ի ներքսակողմն 'ի մոխիր անդր առլեփ շինեալ... եւ կամ զպարտս այլոց... լեալ մէն: Ո–ր Ոսկան. Դուրս քարշել 'ի ներքսակողմէն 'ի մոխիր անդր... եւ զպարտականն այլոց մեծամեծ չա՛... շուրջ լեալ մենելաւուս ձեռն մատուցեալ: 'Ի լու–ն. Առ լեփ շինեալ. Համաձայն Յայսմաւ 'ի Բնաբ: Ո–ր օրինակ մի՝ առ լեբ: 7 Ոմանք. Եւ այսպէս օրհասաւ: 8 Ոմանք. Մի՛ լիցի արժանի... ցուցեալ նա 'ի սեղան... վասն այսորիկ մոխ՛: 9 Ոմանք. Քան առ հարբն որ եղեն հասուցանել հեբր՛: 10 Ոմանք. Զցայգ եւ... զի որպէս եւ յայլ ժամանակս՝ եւ արդ: 11 Ոմանք. Եւ 'ի սրբոյ տաճարէ անտի մեր՛: 12 Ոմանք. Թաւալէին զերիս աւուրս: 14 Ոմանք. Եւ տաճարին եւ աշխարհի:

15 Ոմանք. Եւ առնոյր զԱրստիդէս... դռնապանսն իբրեւ զչորս հազարս այր... եւ այսպէս զդռ՛: Ո–ր Ոսկան. զարս Տիդէս... դռնապահուն իբրեւ: 17 Ոմանք. Յայն յառաւօտուն հասանէին: 18 Ոմանք. Եւ միւսանգամ... եւ 'ի Կորէս: 21 Օրինակ մի. Եւ պատժեցաւ, 'ի սուր պատեցաւ... (22) եւ յառնուլ առնոյր զամուրսն: 23 Ոմանք. Կողմանց անտի 'ի պար՛... մոլեգին գնացն Փիլ՛... եւ աղաչեաց զեբրայեցիսն եւ հնազանդեցաւ նոցա... եւ զխաղաղ՛: 24 Յօրինակին. Զհեգեմոնիդէս 'ի Դովրայ: 25 Ոմանք. Եւ ո՛չ հանդարտէին: 26 Այլք. Առաջի եկաց իմաստնաբար: Ոսկան. Յայն արշաւան... այսպիսեաւ դարձիւ: 14.1 Յօրինակին պակասէր. Յետ երից ամաց ժամանակի: 2 Ոմանք. Յաշխարհամէջս անդր արշաւել, եւ մեր՛: 3 Ոմանք. Պղծեալ զառաջին խառնակութեան ժամանակաց խորհեցաւ 'ի միտս իւր, եւ ետես եթէ որպէս եւ է: 5 Ոմանք. Անմտութեան օգնական լինելոյ:

խաղաղութեամբ հնազանդել ձերում տէրութեանդ: [7]Վասն
այսորիկ իմ աւասիկ թողեալ 'ի բաց զփառսն Հայրե-
նի՝ զքահանայութիւն, եկեալ հասեալ եմ առ քեզ. [8]նախ՝
վասն իրացս արքունի սրտացաւութեամբ ցուցանել, և ա-
պա վասն մե՛ր. զի մեծաւ ծփանօք մտախո՛հ հասի առ քեզ
վասն արանցն անմտութեան. որպէս ամենայն ազգն մեր
յանպարտ՝ անպարտ կա՛ն 'ի խռովութեան: [9]Այլ որպէս ընդ
կողմանս կողմանս և ընդ աշխարհս ամենայն խորհուրդս
խաղաղութեան՝ և կամս մարդասէրս ունիք, զայն ամե-
նայն տեղեկացեալ գիտեմ: [10]Այլ մինչ Յուդա կենդանի է՝
անհնար է խաղաղութիւն առնուլ իրաց արքունի 'ի Հրէ-
աստանի: [11]Իբրև նա այսպէս սկսաւ խօսել վասն նորա,
այլ աւագանին որ թշնամութեամբ ոխս պահէին Յուդայ,
առաւել ևս շուրջ զայրացուցին զթագաւորն: [12]Մինչ անդ-
րէն վաղվաղակի հրամայեաց կոչել զփղապե՛տն Նիկանովր,
ե՛տ զօրս 'ի ձեռն, և կացոյց սպարապետ կողմանցն
Հրէաստանի. արձակեաց մեծաւ հանդերձաւ, [13]բազում
պատուիրանաւ զի զՅուդայ ինքնին 'ի գլխովին զբռամբ
արկանել, և զգունդն ամենայն յայսկոյս՝ յայնկոյս ցրել.
անդ կացուցանել զԱղկիմոս քահանայապետ մեծի տաճա-
րին: Այն որ 'ի Հրէաստանէ [14]անտի ազգքն փախստա-
կան գնացեալ էին վասն Յուդայ, գային պառակտեալք՝
և անդէն խառնէին 'ի գունդն Նիկանովրայ. զհրէիցն
թշուառութիւն իւրեանց փառաւորութիւն համարէին: [15]Սո-
քա իբրև լսէին զՆիկանովրայ զարշաւանն. և զայնչափ
յոյզսն հեթանոսաց. հող 'ի գլուխ լինէին, առաջի թա-
ւալէին, որ իսկզբանէ յաւիտենից հաստատեաց զիւր ժո-
ղովուրդ, և յամենայն ժամանակի յայտնապէս ձեռնկալո՛ւ
լինէր իւրոյ վիճակին: [16]Իբրև հրամա՛ն տայր զօրավարն՝
փութանակի ընդ առա՛ջ եղև նմա 'ի գեօղ մի Դեսաւոմ ա-
նուն՝ [17]Շմաւոն եղբայր Յուդայ, 'ի դիմի՛ հարաւ Նիկա-
նովրայ. և առ փոքր մի նիզակակցացն յանզգաստութենէ
'ի պարտութիւն մատնեալ: [18]Սակայն լուեա՛լ էր Նիկանով-
րայ զարանցն քաջութեան, և զմարտ պատերազմի 'ի վե-
րայ աշխարհին ճգնութեան քաջութեամբ, երկնչէր զիւս
դատաստանին արեամբ վճարել: [19]Վասն այսորիկ յղեաց
կոչեա՛ց նա զՊոսիդոնիոս, և զԹէոդոտոս, և զՄատա-
թէոս, տա՛լ և առնուլ՝ և կռել դաշինս: [20]Իբրև բազում
տարուբեր և խորհուրդք 'ի մէջ լինէին, և 'ի բազումս
ևս զօրագլուխն զխորհուրդն սփռէր. և զօրքն ևս մի-
աբանութեամբ միով հաւանութեամբ զհաշտութի՛ւն յանձն
առնուին: [21]Եդի՛ն զուխտն առաջի՝ և դաշինս կռեցին:
Ժամադի՛ր լինէին միմեանց, յորում աւուր 'ի մի՛ վայր հա-
եալ զուխտն հաստատեսցեն: Եկին առ միմեանս, աթո՛ռս
արկին, խորհո՛ւրդ խորհեցան, դաշի՛նս կռեցին: [22]Յու-
դա հրամա՛ն ետ իւրեանց գնդին՝ վառե՛լ պատրաստե՛լ
դարանամո՛ւտ լինել, զի մի՛ դա՛ւ ինչ չարագործութեան
նոցա 'ի թշնամեացն լինիցի: Եւ ա՛յնպէս զգուշութեամբ
զյօրինի դաշինս ընդ միմեանս հաստատէին: [23]Եւ մտեալ
շրջէր յԵրուսաղէմ ո՛չինչ անկարգ և անօրէն գնացիւք: Զայն
որ խառնիճաղանճ զօրս յինքն կուտեալ էր՝ յիւրաքան-
չիւր տեղիս արձակէր: [24]Եւ ունէր Նիկանովրայ զՅուդայ
գրգանօք փափկութեամբ՝ և մտադեւր սիրով: [25]Աղաչ-
եաց կի՛ն առնուլ 'ի նմանէ, զի գո՛ւթ անկցի, և զաւակ
խառնեսցի: Յանձն առ Յուդա, հաւանեցաւ, հաստատեաց,
ընտանեցաւ: [26]Իբրև ետես Աղկիմոս զնոցա ընդ միմեանս
հաւասարութիւն, և դաշինք որ 'ի մէջ կռեցան, վարեա՛ց
ե՛կն վաղվաղակի առ Դեմետրիոս. ամբաստա՛ն լինէր զՆի-
կանովրայ. և ցուցանէր՝ օտարաձա՛յն այլամիտ խորհուրդս
ունել նմա ընդ օրէնս արքունի. զի զթշնամակարն իրաց ար-
քունի՝ յորդէգիրս առեալ ժառանգ՝ իւր անձին փոխանակ
կացուցանէ: [27]Իբրև լսէր զբանս անօրէն բանսարկուին՝ 'ի
սրտմտութիւն բրդեցաւ թագաւորն. հրամա՛ն ետ թագա-
ւորն հրովարտա՛կս տալ, յա՛յտ առնել թէ չէ՛ հաճեալ ընդ
դաշինս հաւանութեանն: 'Ի նմի՛ն հրովարտակի հրամա՛ն
տայր՝ կապեա՛լ ոտիւք և կապեալ ձեռօք տա՛լ ածել զՄա-
կաբէ 'ի քաղաքն Անտիոքացւոց: [28]Իբրև ա՛յս ամենայն ա՛զդ
եղև Նիկանովրայ, խոնարհեալ կործանեալ՝ կայր տրտմեալ
'ի միտս իւր թէ ստութիւն ինչ մնցէ 'ի դաշինս անդր. և
ուխտքն եղիցին տարապարտուց, յոչինչ փնասու 'ի վերայ
առնն արդարոյ: [29]Բայց քանզի զհրամա՛ն ինչ ո՛չ անցանել
ըստ թագաւորին, սպա՛ս արար մարթանօք զհրամանն կա-
տարել: [30]Իսկ Մակաբէոս՝ իբրև ետես յայրատագո՛յնս իմն
մատուցեալ զնա Նիկանովրայ. և զօրէն նուաճութեանն
խստագոյնս և շինականագոյնս մերձենալ նորա 'ի նա.
ո՛չ լա՛ւ համարեցաւ զյանդգնութիւնն Նիկանովրայ. ան-
դէն յանդիման նորա շա՛տ զօք ընդ իւեարս չփոթեաց.
և ինքն ե՛լ գնաց յերեսաց Նիկանովրայ: [31]Իբրև ետես
Նիկանովր, թէ ա՛յնպէս զձեռօք ո՛չ կարաց ածել զա՛յրն որ-
պէս կամէր. ե՛կն եհաս 'ի վերայ քահանայիցն 'ի տաճա-
րին սրբութեան՝ մինչդեռ նոքա զպատարագսն մատու-
ցանէին, սաստէր նոցա՝ զայրն 'ի ձեռս տալ վաղվաղա-
կի: [32]Նոքա երդմամբ հաստատեցին՝ թէ ամենևին զայն
այր և տեսեալ չի՛ք մեր. ձգեա՛ց զձեռն իւր 'ի տաճա՛ր
անդր, [33]և ա՛յսպէս երդուաւ. Եթէ ո՛չ կապեալ ոտիւք և
ձեռօք զՅուդա 'ի ձեռս իմ տայցէք, զայդ տաճար Աս-
տուծոյ հա՛րթ յատակ արարից, և զսեղանդ կործանեցից,
և զտաճարդ զայդ նուիրեալ որմզդակա՛ն դից հաստատե-
ցից: [34]Եւ զայս իբրև ասաց՝ ե՛լ գնաց: Քահանայքն ձե՛ռս
բարձին յերկինս, կարդային առ որ յամենայն ժամանակի
օգնական և պաշտպա՛ն լինէր ազգին իւրեանց՝ և ասէին.
[35]Դու Տէր ամենայնի, աննիազ յամենայնէ, լի՛ ամենայնիւ.
քեզ կամք ա՛յնպէս եղեն, հաստատել զտաճար բնակութեան
քոյ 'ի միջի մերում: [36]Եւ արդ՝ յամենայնի սրբութեամբ
Տէր, պահեա՛ դու յաւիտեան զայս նորոգապէս սրբութեամբ
զտաճար քո: [37]Հռա՛քս ոմն անուն՝ 'ի ծերակոյտ ժողո-
վրդենէ անտի 'ի զօրացն Երուսաղեմի ա՛յր ընդընկերասէր,
մարդասէր յոյժ, բարենշան բարեհամբաւ, ըստ խնամոտ
մտաց՝ հա՛յր կարդացեալ Եբրայեցւոց: [38]Զի յառա՛ջ ժամա-
նակի անդ՝ զանխառն զանապակ օրէնսն օրինադի՛ր լինէր
հրէութեան ոգւով և մարմնով. յառաջ տուեալ էր զան-
ձրն ամենայն ազատութեան: [39]Իբրև կամեցաւ Նիկանովր
յա՛յտ յանդիմանութեամբ զթշնամութիւն յայտնել զոր ու-
նէր ընդ հրէայսն, հատոյց զօր աւելի քան զհինգ հարիւր,
երթալ 'ի բուռն առնուլ զնոսա: [40]Զի ա՛յսպէս ասաց, թէ
այդք ևս ամաչեցեալք դարձցին, գործ մեծ գործեցից 'ի
վերայ քաղաքիդ: [41]Իբրև հասին զօրքն, զաշտարակն պա-
տեցին, և :'ի վերայ դրանն գո՛ւն գործեցին. ձա՛յն տա-
յին միմեանց հո՛ւր մատուցանել՝ զի զդուռն հրձի՛գ արաս-
ցեն: [42]Իբրև այնչափ 'ի վարան տագնապի մտանէր այրն,
ո՛ւշ առնէր, անձին հրամայէր, դնէր սուսեր ընդ պորտով,
կամէր ազատօրէն մեռանել քան անկանել 'ի ձեռս ան-
օրինաց, և պղծել զանձին ազնուութիւն: [43]Եւ սրովն ուղ-
ղո՛րդ 'ի ներքս երթայր վասն ճեպոյն վտանգի: Եւ զօրացն
ընդ դրունսն խուժելոյ. կամէր ելանել 'ի վեր և զանձն 'ի
բարձուէ ընդ պարիսպն հոսել: [44]Նոքա իբրև յիւրեանս ա՛յսր

---

6 Այլք. Յուդա Մակաբէ համարձակեալ է: Ոմանք. Եւ պատրաստեալ են յուզել... ձերոյ տէրութեան: 8 Ոմանք. Վասն իրացդ արքունի սրտցաւութեամբ... յանպարտ պարտական 'ի խռո″: Ո–ր Ոսկան. Անպարտական 'ի խռովու″: 10 Ոմանք. Անհնար է խաղաղութիւն առնել իրացդ ար″: 11 Ոմանք. Իբր նա այնպէս սկսաւ: 12 Ոմանք. Մինչ անդէն վաղվա″... կոչեաց զփղապետ Նի″... և արձակեաց: 13 Ոմանք. ԶՅուդայն ինքնին գլխովին զբռամբ... և անդ կացու″: Ոմանք. Այն որ 'ի Հրէաստանի (14) ազգքն փախստական գնացեալ էր վասն Յուդայի, գային... փառաւորութիւն համարեալ առնէին: 15 Ոմանք. Լինէր յիւրում վիճակին: 17 Ոմանք. Եւ Շմաւոն եղ″... 'ի դիմի հարեալ Նիկա″: 18 Ոմանք. Նիկանովրայ՝ զօրացն զքաջութիւն... ճգնութեան քաջութեան: 19 Ոմանք. ԶՊիսիդոնինիոս, և զԹիոդոտոս և զՄատաթիաս: 20 Ոմանք. Միաբան միով հաւանութեամբ: 22 Ոմանք. Վառեալ պատրաստեալ... զօրինի 'ի դաշինս ընդ: 23 Ոմանք. Խառնիճաղանճ զօրն իւր կու″: 24 Ոմանք. Եւ ունէր Նիկանովր զՅու″... և փափկութեամբ և մտադիւր: 25 Ոմանք. Եւ աղաչեաց:

26 Ոմանք. Օտարաձայնս և այլա″... յորդէգիրս ա՛ռ 'ի ժառանգ իւր: 27 Ոմանք. 'Ի սրտմտութիւն բարկութեան բրդեցաւ թա″: 29 Ոմանք. Բայց քան զհրամանաւ ինչ ո՛չ անցանել զթագաւորին: 30 Յօրինակին պակասէր. Մատուցեալ զնա Նիկանով″... խստագոյնս և շինականագոյնս մերձե″: Ոմանք. Մատուցանէր զնա Նիկանովր, և զօրէն սորին նուաճութիւն... մերձենալ նորա առ նա. ո՛չ 'ի լաւ համա″... ընդ միմեանս չփոթեաց: 31 Ոմանք. 'Ի տաճարն սրբութեան: Յօրինակին պակասէր. Զայրն 'ի ձեռս տալ վաղվաղակի: 32 Ոմանք. Հաստատէին եթէ ամենև″: 33 Ոմանք. Եւ այնպէս երդուաւ... 'ի ձեռս իմ տացէք, զայս տաճար: 34 Ոմանք. Եւ կարդային առ այն որ յամենայն: 36 Ոսկան. Յամենայնի սրբութեան Տէր... զսրբութեան տաճար քո: Յօրինակին. Յաւիտեան զանորոգապէս սրբ″: 37 Օրինակ մի. Առաքս ոմն անուն: Այլք. Այր ընկերասէր մար″: 38 Ոմանք. Զի յառաջին ժամանակի... զանապական օրէնսն: 39 Ոսկան. Հատոյց զօրս աւելի: 41 Ոմանք. Զի զդրունսն հրձիգս ա″: 43 Ոմանք. Ուղղորդ 'ի ներքս երթալ վասն ճեպիցն վտան″... ընդ պարիսպն հոսել:

անդր խուճապեցան, և 'ի նմանէ ամբոխն փարատեցաւ.
եդ զուսերն և չոգաւ զիւրովին. 45 և կանգնեցաւ ան-
դէն, մինչև զօրն և ոգիքն անդէն կային. եկն յայտ անդր
զայրագին լի՛ բարկութեամբ, մինչև արիւնն գունդագունդ
արտաքս հոսէր, և վէրքն չարաչար պատառեալ էին, և ամ-
բոխն առաջի անդ յայսկոյս յայնկոյս փարատէր: 46 Ել եկաց
'ի վերայ վիմի միոջ, յանդիման կողմանցն երկոցուն. խո-
նարհեցաւ ա՛ռ 'ի գիրկս իւր զաղիսն արեամբն հանդերձ, և
ցո՛յց 'ի վեր յերկինս, կարդա՛ց զՏէր կենդանութեան զօգւոց
և զմարմնոց՝ և ասէ. Զսո՛յն հատուցումն հատուսջիր դու
նմա: Եւ նա զա՛յս օրինակ փոխեցաւ յաշխարհէ:

15 Իսկ Նիկանովր՝ իբրև ա՛զդ եղև նմա վասն Յուդայ-
եանց 'ի կողմանցն Շամրտացւոց, խորհեցաւ պատրաստե-
ցաւ յաւուր պահոց շաբաթու անկանել 'ի վերայ: 2 Եւ հրէ-
այքն՝ որ ընդ նմա էին, բռնադատեալ տանէր Նիկանովր,
սկսան աղաչել և ասել. Քա՛ւ քեզ Տէր, մի՛ այդպէս խիստ
և խըժաբար կատարեր զկամս քո. այլ տո՛ւր փառս, և դի՛ր
պատիւ աւուրս որ պատուեցաւ 'ի պատիւ հանգստեան
յամենակա՛լ սրբոյդ: 3 Սկսա՛ւ անդէն հարցանել անօրէնն՝
և ասէ. Եւ գո՞յ Աստուած ամենակալ յերկինս որ հրամայ-
եաց ձեզ փափուկ ունել զօրն շաբաթուց: 4 Նոքա պատաս-
խանի ետուն՝ և ասեն. Այո՛, գոյ Տէր ամենազօր կենդա-
նի՛, որ հրամայեաց փափուկ ունել զեւթներորդ շաբաթուց:
5 Եւ ժանտաժուտն ասէ արհամարհանօք, ասէ. Հզօրն երկ-
րիս է. որ տայ գործել զինու և զարդու, և գործել զգործ
արքունի: Եւ սակայն ո՛չ մեղմացաւ անօրէնն 'ի հպար-
տութենէ անտի: 6 Եւ Նիկանովր ամենայն հպարտութեամբ
խստապարանո՛ց գնացեալ, համարէր հասանել 'ի վերայ
Յուդայեանց. հասանե՛լ սատակե՛լ՝ և նշան յաղթութեան
կանգնել: 7 Իսկ Մակաբէոս յամենայն ժամ յուսացեալ էր
'ի Տէր, որ հանապազօր զօգնութիւն իւր ո՛չ առնէր պա-
կաս 'ի նմանէ: 8 Մխիթարէր զայնոսիկ որ ընդ իւրն էին,
մի՛ ձանձրանալ՝ մի՛ զանգիտել յանօրէն հեթանոսաց. յար-
ձակել, և դնել 'ի մտի զգործսն քաջութեան զառաջինս: Եւ
որ օգնականութիւնքն ձեզ յերկնից գտան. և արդ՝ ակն
ունել զնոյն 'ի Տեառնէ զյաղթութիւն և զմխիթարութիւն:
9 Եւ մխիթարէր զնոսա յօրինացն և 'ի մարգարէից. առ
յիշեցուցանել նոցա զմարտ պատերազմաց որ 'ի ձեռս նո-
ցա կատարեցաւ. 10 ընդասրտեալ յօժարագո՛յնս ևս առնէր
զնոսա, զհեթանոսացն ևս ստութիւնս 'ի մէջ բերելով, և
զուխտիցն անցանել, և զերդմանցն անարգել: 11 Եւ զմի՛ մի
'ի նոցանէ առաւել վառէր մխիթարութեան բանիւք, քան
զինուքն՝ տիգօք և ասպարօք: Եւ երա՛զ ևս սկսաւ պատ-
մել նոցա արժանի ժամանակին, զի առաւել զուարթացոյց
զամենեսեան: 12 Եւ էր տեսիլ երազոյն օրինակ ա՛յս. Ոնիա
ոմն որ յայնժամ լեալ էր քահանայապետ. գեղեցիկ հայելով,
շքեղ տեսանելով, հեզ բարոյիւք, և հանդարտ սրտիւ. եկեալ
խօսս արկանէր գեղեցիկ, որպէս սովո՛ր էր 'ի մանկութե-
նէ, զամենայն զանձին քաջութենէ. համբարձեալ զձեռս իւր
աղաչէր 'ի վերայ ազգացն հեբրայեցւոց հաստատութեան:
13 Ապա դարձեալ տեսանէր զծերութիւն փառաւորութեան
սքանչելի՛ և կարի՛ վայելուչ իմն, որ շուրջ զնովաւ բա՛կ
առեալ ունէր՝ և ասէ. 14 Անդուստ խօսել սկսաւ Ոնիա՝
և ասէր. Եղբայր ծերս այս. սա՛ է որ բազում աղօթս
անպակաս յաճա՛խ մատուցանէ Աստուծոյ Երեմիա՛ մար-
գարէ Աստուծոյ: 15 Եւ ձգէր զաջ ձեռն իւր Երեմիա, և
տայր ձեռն 'ի ձեռն ցՅուդայ սուսե՛ր մի ոսկեհանդերձ.
և ընդ տալն՝ ասէր ա՛յսպէս. 16 Ա՛ռ զսուսերդ զայդ սուրբ
պարգև՛ 'ի Տեառնէ, զի դովաւ սատակեսցես զթշնամիս
ամենայն: 17 Մխիթարեցան 'ի բանից անտի Յուդայ՝ 'ի զօ-
րեղ և 'ի գեղեցիկ, և բարձրացան յոյժ քաջալերութեամբ.
և անձինք երիտասարդաց վերստին նորոգեցան: Եդին 'ի
մտի այնուհետև ո՛չ այսր անդր սայթաքել, այլ հաստա-
տուն զօտս 'ի բո՛յս հարկանել, յենուլ 'ի համբերութիւն,
պնտել 'ի պատերազմի. ժառանգե՛լ զանուն քաջութեան,
հաստատե՛լ 'ի վերայ իրաց ուխտին հաւատարութեան, առ-
նուլ յանձն զճգնութիւն 'ի վերայ քաղաքին. 18 'Ի վերայ
կանանց և մանկանց, և եղբարց հարազատաց, 'ի վե-
րայ դայեկաց բնակաց տոհմային քաղաքացւոց: Եւ առա-
ւե՛լ քան զայս ամենայն ճգնութիւն պատերազմի էր նո-
ցա 'ի վերայ մեծի՛ տաճարին սրբելոյ: 19 Է՛ր սակայն և 'ի
ներքս քաղաքացւոցն ո՛չ թեթև վիշտ պատերազմի, կար-
ծիք վշտագին դատաստանին: 20 Այլ իբրև կողմանք զօ-
րացն երկոցունց 'ի միմեանս հասանէին, փող հարկա-
նէր, պատրաստութիւն լինէր, ճակատ յարդարէր, զփիղսն
վառեալս գնդաց գնդաց 'ի գլուխ յօրինեալ կացուցանէին,
զհեծելազօրն յա՛ջ յահեա՛կ թևս գործէին: 21 Զայն ահեղ տե-
սիլ՝ Յուդա հայեցեալ տեսանէր՝ զգնդացն դրօշու դրօշու
պատրաստութիւն, զզինուցն զպէսպէս սրբութիւն, զնշա-
նացն փողփողել, զմեծամեծ գազանացն զանհնարին գա-
զանութիւն, զձեռս յերկինս համբարձեալ՝ 'ի նշանագործ
Տէրն կարդայր. որ ո՛չ թէ ըստ կամս մարդկան, այլ ըստ
կամս իրաւանց իւրոց տայ զյաղթութիւն արժանեաց իւ-
րոց: 22 Եւ սկսաւ ասել յաղաչելն իւր ա՛յսպէս. Դո՛ւ Տէր տե-
րանց՝ առաքեցեր զհրեշտակ քո 'ի ժամանակս Եզեկիայ
արքայի, և սատակեցեր դու 'ի զօրաց անտի Սենեքերի-
մայ հարիւր ութսուն և հինգ հազար հեծեալ սպառազէն:
23 Եւ արդ Տէր ամենազօր որ բնակեալ ես յերկինս, ա-
ռաքեա՛ զհրեշտակ քո առաջի մեր, յա՛հ յերկեւղ 'ի դո-
ղումն, 'ի զօրութիւն բազկի քոյ, զի զահի հարցին՝ և
պակիցեն, 24 որ հայհոյութեամբ հասեալ են 'ի վերայ ժո-
ղովրդեան քոյ: Եւ սա զբանս իւր վախճանեաց: 25 Իսկ
Նիկանովր՝ մեծաշուք 'ի գոչիւն փողոյ, բազում արուես-
տականաց ձայնիւ զճակատն յառա՛ջ մատուցանէր: 26 Սոքա
աստի բազում աղօթիւք խնդրուածոց 'ի վերայ յարձակե-
ին. 27 զձեռս 'ի գո՛րծ արարեալ, և զսիրտս առ Աստուած
աղօթիւք յերկինս: Հասանէին հարկանէին գունդն Մակաբ-
եան Յուդայ 'ի զօրացն հեթանոսաց, ո՛չինչ պակաս յերից
բիւրուց և 'ի հինգ հազարէ. մեծապէս զուարճացեալք յե-
րևել օգնականութեան մեծութեանցն Աստուծոյ: 28 Եւ ա՛յս-
պէս զգործս ուրախութեան վճարեալ խնդութեամբ դառ-
նային: Անդ գտանէին անկեալ զՆիկանովր առաջի գնդին
կոտորելոց՝ զինուն զարդուն նշանօք հանդերձ 'ի մէջ
երկուց ճակատոցն: 29 'Ի ձա՛յն բարձր գոչման մեծ աղաղա-
կաւ զամենազօրն Աստուած յիւրեանց հայրենի բարբառն
օրհնէին: 30 Հրաման տայր որ զօրութեամբն հաստատու-
թեամբ՝ առ հասարակ քաջութեամբ նահատակութեամբ՝
մտադեւր հաւանութեամբ 'ի վերայ ազգին նահատակ-
եալ՝ հրամայեաց զգլուխն հատանել զՆիկանովրայ, և զաջ
ձեռն թիկամբն հանդերձ, և տանել յԵրուսաղէմ: 31 Իբրև
եկն խնքն՝ եհաս, կոչեաց զազգատոհմն, զքահանայսն ա-

45 Ոմանք. Անդրէն, մինչդեռ զօրն և ոգ″... եկն 'ի յայտ անդր... մինչ արիւնն գունդա″... առաջի անդր յայսկոյս: 46 Ոմանք. Ել եկաց 'ի վիմի միոջ... և եցոյց 'ի վեր... և կարդաց զՏէր: 15.1 Ոմանք. Վասն Յուդայեան կողմանցն Շա″... անկանել 'ի վերայ նորա: 2 Ոմանք. Աղաչել և ասեն. Քաւ քեզ: Օրինակ մի. Խիստ և դժուարաբար կատարեր... որպէս պատուեցաւ 'ի պա″... յամենակալ սրբոյն: 3 Ոմանք. Սկսաւ անդրէն հարցա″... փափուկ ունել զեւթներորդ օր շաբա″: 4 Ոմանք. Զեւթներորդ օր շաբաթուց: 5 Ոսկան. Ասէ արհամարհանօք. Հզօրն երկ″: 7 Ոմանք. Զօգնականութիւն իւր ո՛չ առնէ պակաս: 8 Ոմանք. Եւ մխիթարէր... և մի՛ զանգիտել յանօրէն հեթանոսացդ... ձեզ յերկնից գտանել: 9 Ոմանք. Առ 'ի յիշեցուցանել նոցա զմարտ պատերազմողաց... կատարեցան: 10 Ոսկան. Պատրաստեալ յօժարագոյն ևս առնէր: Ոմանք. Եւս ստութիւն 'ի մէջ բերեալ՝ և: 11 Ոմանք յաւելուն. Եւ տիգօք և ասպարօք մխիթարեալ զնոսա: Եւ երազ: 12 'Ի բազումս պակասի. Ոնիա ոմն որ յայնժամ: Ոսկան. Հեզ բարուք: 13 Ոմանք. Բակառեալ ունէր՝ և ասէր: 14 Ոմանք. Խօսել սկսանէր Ոնիա... յաճախ մատուցանէր Երեմիա: Նշանոր՝ 'ի բազում Գրչագիրս Համեմատ միւրումն օրինակի, Թէպէտ և պարզաբանաբար, բայց Թուի Թէ վրիպակաւ իմն յաւելեալ Գրի բանս՝ Եղբայր ծերս այս, սա է և այլն: Ո՛ր երկու օրինակէ նաեւ Համեմատ Բնագրին Յունաց ոմնին. Եղբայրասէրս այս, սա է, և այլն:

17 Ոմանք. 'Ի զօրեղ և գեղեցիկ... այսր անդր սայթաքել: Յօրինակին պակասէր. Եւ բարձրացան յոյժ քաջալե″: 18 Ոմանք. Եւ 'ի վերայ դայեկաց: 19 Ոմանք. Ոչինչ թեթև վիշտս: 20 Ոսկան. Այլ իբրև կողմանց զօրացն երկոցունց պատրաստութիւն լինիւր, ճակատ յարդարէր՝ 'ի միմեանս հասանէին. փող հարկանէր. զփիղսն վարեալս... յաջ և յահեակ: 21 Ոմանք. Զինու զպէսպէս սրբութիւն... զձեռս յերկինս բարձեալ 'ի նշանագործ Տէրն կարդային... զյաղթութիւն արժանաւորաց իւրոց: 22 Ոմանք. Սենեքերիմի՝ հարիւր: Յօրինակին Թուագրով տնի. Սենեքերիմայ ՃՁԵՌ: 23 Ոսկան. Եւ 'ի դողումն: Ոմանք. Բազկի քո զահի հարցին և պա″: 25 Ոմանք. Եւ բազում արուեստականաց ձայնից զճակա″: 26 Ոմանք. Սոքա ուստի բազում: 27 Ոմանք. Եւ զսիրտս աղօթիւք առ Աստուած յեր″... Մակաբեան Յուդայի զօրացն: 28 Ոմանք. Զգործս ուրախութեամբ վճարեալ... երկուց ճակատացն. կամ ճակատուցն: 29 Ոմանք. Մեծաւ աղաղակաւ զամենակալն Աստուած յիւր″: 30 Ոսկան. Նահատակեալ, զգլուխն հատանել Նի″:

յամառեալ ես. իցեն ինչ արդեւք՝ վասն որոյ չիցէ՛ ար-
ժան մտանել: Նա ասէ. Այի՛, չի՛ք ինչ հնար. թէ կամիք,
և թէ ո՛չ կամիք. բայց թէ մտանե՛մ: [10]Անդ քահանայքն
ամենայն պատուական հանդերձիւքն իւրեանց, անկանէին
սողէին, աղաչէին զԱստուած օգնել նոցա, և փոխել զխոր-
հուրդն զայն 'ի նմանէ. աղաղակաւ արտասուօք զտաճարն
լնուին. և որ ինչ անդ դիպեալ էին քաղաքացիքն խռովեալ
յանկարծակի յա՛յն վայր հասանէին վաղվաղակի, զի՞նչ
իրք իցեն շշնջէին: Կոյսք 'ի կուսաստանաց մարբքն հան-
դերձ 'ի հրապարակսն հասանէին. հո՛ղ արկեալ զվարսիւք,
ճչի՛ւ աղաղակաւ զքաղաքամէջսն լնուին. [11]և որ ա՛րդ ևս
նորամուտ հարսունք առագաստեալք յօրինեալք նստէին,
զօրինաւոր զամօթն մոռացեալ, ընթացս յանդգնութեան
ընդ քաղաքամէջսն ընթանային: Սոյնպէս մատաղամարքն
մանկամբքն հանդերձ, զդարման մանկանցն թողեալ, և
ա՛յնպէս անզգայութեամբ ընդ անդաստանս առանց դար-
ձադարձի յաւագամեծար տաճար անդր պնդեալ ժողո-
վէին: Բիւրապատիկ իմն էին յայս և 'ի սոյն աղօթք
ժողովելոցն. վասն այսորիկ որ անօրէնութեամբն խորհէր
ձեռն յանձին հարեալ զինքն 'ի ներքս մատուցանել: Յայսր
վերայ քաղաքացիքն բարկացեալ չառնուին յանձն զայն-
չափ տարապարտուց զառնն բռնութիւն: [12]Իբրև տեսին
թէ պնդեալ հաստատեալ կայ զի՛ւր կամսն կատարել.
ձա՛յն ետուն միմեանց, և յիւրաքանչիւր զէնս գնացին,
վառել կազմել պատրաստել մարտնչել՝ մեռանե՛լ 'ի վե-
րայ կարգացն նախնեաց՝ և հայրենի օրինացն. և ան-
դէն վաղվաղակի մե՛ծ խռով 'ի տեղւոջն կացուցանէին.
մինչև հազի՛հազ ծերակոյտ ժողովրդեանն ցածուցանէին
զամբոխն. և զպատրաստեալսն 'ի մարտէ անտի անդրէն
'ի նոյն ժողովսն խնդրուածոց դարձուցանէին: Եւ զօրք
քաղաքին անդրէն 'ի նոյն խնդուածս դառնային: [13]Իսկ
որ զթագաւորանն ծերք և մեծամեծք ժողովրդեանն էին՝
ջանային զմի՛տսն հպարտացելոյն ցածուցանել. և զհես-
տեալ յամառութիւնն զիջուցանել. և նորա չէ՛ր ինչ հնար,
այլ պնդեալ յամառեալ էր զդոյն կամս կատարել՝ զոր
յառա՛ջն խորհեցաւ: [14]Նոյնպէս դարձեալ և որ զնովան էին՝
իբրև յառնն պնդութիւն հայեցան, այսրէն 'ի խնդրուածսն
դարձան, զամենազօրն աղաչել զԱստուած. այցելո՛ւ օգնա-
կան լինել. զի մի՛ արհամարհեսցէ, և մի՛ 'ի ձեռաց թողցէ,
և մի՛ ընդ ոտս տացէ հպարտութեան խորհրդոց՝ զօրէնսն
օրինաւորս: Եւ այնպիսի ստէպ ստէպ սրտի մտօք աղա-
ղա՛կ էր զօրացն ժողովելոց. անհնարի՞ն գոչիւն 'ի նմին
լինէր. զի կարծեալ ա՛յսպէս էր. եթէ ո՛չ միայն մարդիկն
աղաղակիցեն, այլ և պարիսպքն և յատակքն հնչիցեն. զի
ամենայն մարդկանն 'ի մտի եդեալ՝ զմահ ընդ կենաց փո-
խանակել, քան տեսանել զտեղին սրբութեան 'ի պղծութիւն
դարձուցեալ:
2 Սկսան աղաչե՛լ և ասել. Տէր Տէր թագաւո՛ր երկնից,
և Տէր Աստուած ամենայն արարածոց, սուրբ սրբոց, ա-
մենազօր ամենակալ, հայեա՛ց 'ի ցաւագնութիւնս մեր որ
'ի ձեռն անօրինին և պղծոյն՝ որ յանդգնութեամբ հպար-
տացեալ է: [2]Դո՛ւ ստեղծեր զամենայն. դու որ զամենայն
ընդունիս հեզութեամբ և արդարութեամբ. արդա՛ր ես դու
Տէր, և որ հպարտութեամբ և ամբարտաւանութեամբ ինչ
գործեն՝ դատիս զնոսա. դու՝ որ յառաջ զանօրէնութիւնսն
գործէին հսկայս՝ որ յանձանց զօրութիւն և 'ի քաջութիւն
յուսացեալ էին՝ ջնջեցեր, ածե՛ր 'ի վերայ նոցա զանչա՛փ
ջուրցն սաստկութիւն: [3]Դու՝ որ գործէին զամբարտաւա-
նութիւն զՍոդոմացիսն՝ յա՛յտ յանդիմանութեամբ չարեօքն
իւրեանց հանդերձ՝ խայտառակեցեր, 'ի հո՛ւր և 'ի ծծումբ
դատեցեր, և առակ խայտառակութեան յետնոց թողեալ:

[4]Դու՝ զյանդուգն զբուռն արքայն սաստիկ զփարաւոն՝ որ
արկ 'ի ծառայութիւն զժողովուրդ քո սուրբ զԻսրայէլ՝ պէս-
պէ՛ս հարուածովք կշտամբեցեր. ցուցեր զքո զօրութիւն, և
ցուցեր դու նմա զմեծութիւն զօրութեան քոյ, զի պատ-
րաստեալ զհետ հեծանէր ժողովրդեան քոյ բազում զօրօք՝
կառօք և երիվարօք, ընկլուզեր զնա 'ի ծով Կարմիր: [5]Բայց
զայնոսիկ որ հաւատացինն 'ի քեզ, 'ի վերայ ամենայն ա-
րարածոց զօրացեալս պահեցեր. որք իբրև տեսին զգործս
ձեռաց քոց, օրհնեցի՛ն զքեզ Տէր ամենակալ: Դու՝ թագա-
ւոր, որ ստեղծեր զանչափ զանքննին զերկինս ամենայն, և
ընտրեցեր քեզ զքաղաքս զայս, և սրբեցեր զտեղիս զայս
յանուն քո քե՛զ որ աննիա՛զդ ես յամենայնի: [6]Դո՛ւ ժողովե-
ցեր զսա 'ի փառս մեծութեան, և 'ի պատիւ անուան քոյ.
դո՛ւ սիրեցեր զտաճարս զայս, և խոստացար դու տանս
Իսրայէլի, բա՛մ, ինչ դէպք որ հասանիցեն, կամ՛ նեղութիւնք
որ գայցեն 'ի վերայ, գալ հասանել յայս տեղի սրբութեան
խնդրուածովք, լսելի՛ առնել զաղօթս մեր: Արդ հաւատարի՛մ
է բան քո՝ և ճշմարիտ. [7]քանզի բազում անգամ՛ յորժամ՛ նե-
ղեցան հարքն մեր՝ օգնեցե՛ր դու նոցա 'ի խոնարհութեան
իւրեանց, և փրկեցե՛ր դու զնոսա 'ի մեծամեծ չարեաց: Արդ
աւասիկ և մե՛ք սուրբ թագաւոր, վասն մեծամեծ և բազում
մեղաց մերոց չարչարեալք, հնազանդեալ եմք 'ի թշնամեաց
մերոց պարտասեալք և տարակուսեալք 'ի տկարութեան
մերում՛, և յաւուրս նեղութեան յայսմիկ. պիղծս հպարտս և
ամբարտաւանս սպրդէ հնարել 'ի նե՛րքս անկանել, թշնա-
մանել զտեղի սրբութեան զանուանի ընդ ամենայն երկիր
երևեալ տաճա՛ր փառաց անուան քոյ: [8]Թէպէտ և բնակու-
թիւն քո երկնից երկի՛նք են, աներևոյթ անձեռնհաս ձե-
ռին մարդոյ. սակայն վասն զի հաճեցար փառօք քովք ընդ
վայելչութիւն Իսրայէլի. սրբեցեր զտեղիս զայս. թէպէտ և
յանցաւո՛ր եմք քեզ, մի՛ խնդրեր զվրէժն զայն հեթանոսաց
պղծութեամբ. և մի՛ պարծեսցին անօրէնք յիւրեանց հպար-
տութիւնն, և մի՛ ցնծասցեն յամբարտաւանութիւն խօսից
իւրեանց. խօսիցեն՝ թէ մեք կոխեցաք զտաճարն սրբու-
թեան, զօրօրինակ կոխիցին խառնակոխ յատակք մեհենից:
[9]Ջնջեա՛ զմեղս մեր, և ցրուեա՛ զամենայն յանցանս մեր,
երևեցո՛ զողորմութիւնս քո ըստ ժամանակիս ըստ այսմիկ:
Վաղվաղակի ժամանեսցե՛ն մեզ ողորմութիւնք քո. և տո՛ւր
օրհնութիւն 'ի բերան կործանելոցս և չարչարելոց. և արա՛
ընդ մեզ խաղաղութիւն: [10]Իսկ սուրբն որ 'ի սուրբս բնակ-
եալ է, ամենազօրն ամենակա՛լն Աստուած լուաւ զօրինաւոր
զաղօթս խնդրուածոց ժողովրդեանն: Զայն՝ որ ա՛րդ ևս
հպարտութեամբ ամբարտաւանութեամբ մեծաւ 'ի վերայ
նոցա համարձակ սաստկացեալ էր. հարկանէր զնա աս-
տի անտի սաստիկ. տանէ՛ր և շարժէ՛ր զնա իբրև զեղէգն
'ի հողմոյ, և անդէն զգետնէր: Եւ նա ա՛յնպէս անկեալ դնէր
անզգայ ընդարմացեալ անմռունչ՝ անդամալոյծ լուծեալ
յամենայն յօդից. զի սաստիկ և արագ արագ հասանէր 'ի
վերայ նորա դատաստանքն հպարտութեան: [11]Բարեկամքն
և որ զնովաւ սպասաւորքն էին, իբրև տեսին թէ այն-
պէս արագ հասանէր 'ի վերայ նորա դատաստանն, զահի
հարկանէին, թէ գուցէ և ոգիքն սպառիցին. և վաղվա-
ղակի զնա 'ի ներքուստ արտաքս քարշէին. զարհուրեալք
'ի սաստիկ հարուածոց անտի: [12]Իբրև ժա՛մք հարուստ 'ի
վերայ անցին, և առնն միտք յի՛նքն եկին: Սակայն ո՛չ ե-
թէ զղջացաւ 'ի միտս իւր յե՛տ մեծի պատուհասին, այլ
սաստկագո՛յնս ևս սկսաւ սպառնալ:
Հրամայէր չու դարձս առնել: [13]Իբրև եկն եհաս յերկիրն Գ
Եգիպտացւոց. և զչարութիւնն և՛ս քան զևս յանձն իւր
աճեցուցանէր, տաճարակից ընկերովքն իւրովք՝ մեկնելովք
յամենայն իրաւանց. և ո՛չ միայն անթիւ աղտեղու-
թեամբքն չյագեցաւ, և յանչափ յանդգնութիւն հասա-
նէր, զի հայհոյութեամբ զտեղին լնոյր: Զի բազումք 'ի

---

էր պնդել զանձն:

9 Ոմանք. Զիցէ ինչ արժան... թէ կամիցիք թէ չկամիցիք: Ոս-
կան. Նա ասէ. Այո՛, չիք ինչ: 10 Ոմանք. Զխորհուրդն զայն 'ի նո-
ցանէ... և որ ո՛չ անդ դիպեալ էին քաղաքակիցքն խո՛': Յօրինա-
կին. Զքամէջսն լնուին. ո–ր 'ի լո–ւ. ո–ղղագրի զքաղաքամէջսն.
Համաձայն այլոց: 11 Ոմանք յա–ելո–ածով. Առագաստօք յօրին-
եալք... և այնպէս անզգայութեամբ յի–րաքանչի–ր Գործ Թողեալ
անզգայո–թեամբ ընդ անդաստ''... յայս և 'ի սոյն էին աղօթք: 'Ի
լո–ւ. Յայսր վերայ քաղաքակիցքն. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 12
Ոմանք. 'Ի տեղւոջն կացուցին: 13 Ոմանք. Եւ զհեստել յամառու-
թեանն... զնոյն կամս կատարել, զոր յառաջնումն խորհէ՛': 14 Ո-
մանք. Եւ այնպէս ստէպ ստէպ: Այլք. Անհնարին գոչիւն իմն լի-
նէր: 2.1 Ոմանք. Հայեաց 'ի ցանկութիւնս մեր որ 'ի ձեռս ան-
օրինին... հպարտացեալ էր: 3 Ոմանք. Եւ 'ի ծծումբ դատեցար...
յետնոց թողեր:

5 Ոմանք. Թագաւոր, ստեղծեր զանքննին զեր''... աննիազդ
ես յամենայնէ: 6 Ոմանք. Իսրայէլի. բանք ինչ անդէպք որ
հասա՛': 7 Ոմանք. Չարեաց իւրեանց, աւասիկ... պատրաստեալք
և տկարացեալք... և յաւուրս 'ի նեղութեանս: 8 Ոմանք. Հեթա-
նոսաց ըստ պղծութեան. զի մի՛ պարծեսցին... յամբարտաւանու-
թեան խօսից իւրեանց, և ասիցեն թէ: 9 Յօրինակին պակասէր. Ըստ
ժամանակիս ըստ այսմիկ: Ոմանք. Ժամանեսցեն առ մեզ ո՛: 10
Ոմանք. 'Ի վերայ նոցա. Համբարձեալ սաստ''... սաստիկ հար-
ուածովք տանէր և շար''... իբրև զեղէգն 'ի հողմոց: 11 Ոմանք.
Տեսեալ բարեկամքն... այնպէս երագ հասա՛... և ոգիքն անդէն
սպառիցին: 12 Ոմանք. Ոչ եթէ զղջացաւ ինչ 'ի միտս իւր... չու
դարձի առնել:

րուԹեանց զօրացուցիչ զողորմածն Աստուած՝ անդադար
բարբառով արտասուօք կարդային: Անկեալ առ Հասա-
րակ աղաչէին՝ դարձուցանել շրջել զխորհուրդն անօրէ-
նութեան. մեծապէս յայտնութեամբ անցուցանել զօրհասն,
որ անդէն մօտաշուտ զոտիւք զձեռօք պատեալ է: [5]Փղա-
պետն զանողորմ գազանսն՝ գինեզէնս խնկալիցս զայրա-
ցուցեալ ընդ առաւօտն 'ի դուռն Թագաւորին Հասուցա-
նէր: [6]Իսկ այն որ յափտենից ժամանակաց գեղեցիկ ա-
րարածք, բարուք բաժին տունջեան և գիշերոյ վիճակ ել-
եալ յերկնաւոր 'ի պարգևատու յառատաձեռնն Աստու-
ծոյ, ելանէր պարգև մասն մի քնոյ՝ զոր առաքէր 'ի վե-
րայ Թագաւորին. և անդէն Թանձր և խորին, և քաղցր
և անոյշ քնով 'ի զօրութիւն Տեառն կապէր զԹագաւորն,
և զնա յանշարժ խորհրդոցն անտի խաբեալ վրիպեալ կա-
ցուցանէր: [7]Անդ որդիք Եբրայեցւոցն՝ զժամանակեալ զմա-
հաբեր զօրհասի ժամանակն զանցուցեալ, զսուրբն զերկ-
նաւորն Աստուած օրհնէին: Եւ դարձեալ անկեալ 'ի վե-
րայ երեսաց իւրեանց՝ աղաչէին կատարել զպարգևն 'ի
մեծազօր բազկէ անտի, 'ի մէջ հպարտացեալ հեԹանո-
սացն երևեցուցանել: [8]Իբրև ընդ մէջ լինէր ժամ տասնե-
րորդ. և սպաս տաճարին ամենայն պատրաստեալ էր,
և կոչնականքն յիւրաքանչիւր 'ի չափս յօրինեալ կային.
յանկարծակի խԹեաց ազդ արար, մերձ յանցանել լինել
ժամ ուրախութեան տաճարին: Զայն ժամ զուրախութեան
զմտաւ ածէր Թագաւորն, և անդէն բազմեալ վաղվաղա-
կի հրամայէր զկոչնականսն 'ի ներքս կոչել, սպասն առ-
նել տաճարին բարձիցն պատրաստութեան, զայր այր յիւ-
րաքանչիւր գահ հրամայէր մատուցանել. [9]'ի ձեռն առ-
եալ զուրախութիւն խրախունս առնէր տաճարին, զանա-
գան ժամուն ընդ ուրախութիւն զուարԹութեան անցու-
ցանել: Իբրև յերկարագոյն նուագօք զբանիւք անկանէ-
ին. կոչեաց զփղապետն ահեղ սաստկութեամբ դառնապէս
պատուհասէր. ընդէր կամ զմէ զժամադիր սաստիկ հրա-
մանի զօրահասաւ՝ անցեալ հրէայքն, և զայս օր կեցեալ
գտանէին: [10]Նա՝ կայր ցուցանէր նմա զհրամանն արքունի՝
գիշերախառն կատարեալ. և նոքին կոչնականքն վկայէին
բանիցն փղապետին: Ապա Թագաւորն զդառնութիւն գա-
զանութեանն ցածուցանէր՝ և ասէ. Երթ դու քեզ՝ զայս
օր քնոյ շնորհ կալցին նոքա: Բայց անվրէպ զվաղիւ օրն
պատրաստեսջիր 'ի նմին գազանութեան զփիղսն 'ի վերայ
անօրէն ազգին հրէից սատակման հասուցանելոյ: [11]Իբրև
զայն ասէր Թագաւորն. և ամենեքին լի ուրախութեամբ
ընդ մի բերան զհրամանն գովէին, յիւրաքանչիւր վանս 'ի
միմեանց բաժանեալք, վասն անագան ժամուն մեկնէին. և
սակայն այնչափ ոչ տային քնոյ զանձինս, որչափ զգիշերն
ամենայն զմտաւ ածէին մենքենայել զինչ նոր նոր չար-
չարանս 'ի վերայ տառապելոցն հասուցանել մարԹասցեն:
[12]Այն ինչ՝ հաւ խօսեցաւ, կանուխ ընդ առաւօտն գազա-
նացուցեալ՝ վառեալ զգազանսն 'ի գինի և 'ի խունկ, ած-
եալ պատրաստէր. և ինքն իջեալ 'ի մեծի սրահի անդ ճեմ
առեալ շրջէր: Իսկ որ 'ի քաղաքի անդ էին, առհասա-
րակ ելեալ հեղեալ՝ եկեալ ժողովեալ էին. դէտ ակն ու-
նէին Թշուառութեան տեսլեանն, որ ընդ այգն ընդ առա-
ւօտն 'ի վերայ հրէից սպառնացեալ պահէր: [13]Եւ հրէայքն
ժամ 'ի ժամ անցեալ զօրհասան, բազում արտօսր՝ պա-
հոց պնդութեան 'ի ձայն ողորմ ողբոց, զձեռս յերկինս
բարձեալ՝ զմեծ զամենազօրն Աստուած աղաչէին, միւ-
անգամ այցելու լինել փրկել զնոսա յանհնարին յօրհասէն:
[14]Զև լինէր արեգական ճառագայԹիցն յաշխարհ սփռեալ,
և Թագաւորն յարուցեալ դէտ ակն ունէր մեծամեծացն.
հասեալ 'ի դուռն փղապետին, աչօք ցուցանել զպատրաս-
տութիւն փղացն, որպէս վառեալ պատրաստեալ 'ի դուռն
հասեալ էր. [15]Թագաւորն շնորհակալ լինէր. զարմացեալ
էր ընդ պատրաստութիւնն: Դարձեալ միւսանգամ անդրէն
զառածանէր, զինչ իրք իցեն վասն անօրէն ճեպոյն. դար-
ձեալ զմիտս դարձուցանէր, պատուհաս 'ի վերայ փղա-
պետին կապէր, Թէ որ ինչ հրաման տուեալ էր, զայն ոչ
վաղվաղակի 'ի գլուխ հանեալ ցուցանէր: [16]Եւ այս ամե-
նայն լինէր 'ի հրամանէ Տեառն ամենակալի, զանհնարին
զօրհասին պնդութեան խորհուրդսն յապուշ դարձուցա-
նէր: Արդ մատուցեալ փղապետն զմեծամեծս յաւագանւոյն
'ի վկայութիւն տանէր. որպէս կանխաւ փիղքն վառեալ
և զօրքն պատրաստեալ, զհրամանն արքունի հաստա-
տուն 'ի գլուխ կատարեալ ցուցանէր: [17]Դարձեալ յայնմ
ժամանակի Թագաւորն ընդ մեծաւ բարկութեամբ վասն
մեծութեանց գԹոյն Աստուծոյ, զի կամէր ցրուել զխոր-
հուրդս նորա: Որ անդէն իսկ մեծաւ բարկութեամբ՝ սաս-
տիկ պատուհասիւք հայեցաւ ընդ փղապետն: Սկսաւ խօ-
սել՝ և ասէ. [18]Որ միանգամ հարք և մարք և որդիք 'ի
տեսանել իսկ եկեալ իցեն, գրեսցի կուր արկանել գազա-
նացն. և զքեզ ընդ նոսա փոխանակ անմեղացդ այդոցիկ,
որ իսկզբանէ նախնեաց մինչև 'ի նախնիս անարատ զար-
դարութիւն և զհաւատս՝ մեզ պահեալ է Եբրայեցւոցդ
այդոցիկ: Եւ եԹէ ոչ վասն դայեկատոհմ միաանունդ սիրոյն
էր, զքաղցր արևդ յաչացդ հատանէի, և զքեզ նենգաւոր
չարագործ 'ի միջոյ պակաս առնէի: [19]Փղապետն այս-
պէս յանկարծ ժամանակի յեղեռնաւոր պատուհասէն մա-
զապուր ելանէր. և յառաջին զուարԹութենէ անտի զիջեալ
տրտմագոյն երեսօք այր զարամբ զինքն 'ի միջոյ անտի 'ի
բաց մերժէր. և բարեկամքն իւրաքանչիւր գլուխ 'ի վայր
արկեալ, զամբոխն ժողովեալ յիւրաքանչիւր պէտս հրա-
ման տուեալ ցրուէին: [20]Որդիքն Եբրայեցւոց իբրև լուան
զԹագաւորին. զերևելին զՏէր Աստուած, զԹագաւորն Թա-
գաւորաց օրհնել սկսան. առաւել իբրև զայս օգնութիւն
ևս 'ի վերայ անձանց իւրեանց գտին: Եւ անդէն վաղ-
վաղակի Թագաւորն հրաման տայր կոչնականացն յուրա-
խութիւն դառնալ: [21]Կոչեաց զփղապետն դարձեալ մեծաւ
պատուհասիւ, սկսաւ խօսել ընդ նմա և ասէ. Քանիցս
անգամ քեզ վասն նոցա, այ Թշուառ՝ պատուէր տուեալ
է, վառել կազմել պատրաստել զփիղսն. գոնէ արդ՝ առ
վաղիւ պատրաստեսցես յեղեռնաւոր Թշուառական ազգին
հրէիցն: [22]Իբրև զայն լսէին բազմականքն ամենայն առա-
ւել զարմանային ընդ յեղյեղուկ միտս Թագաւորին: Եւ ա-
սեն. Ցերբ է այդ արքայ, ցերբ 'ի միտս քո փորձես զմեզ.
այդ՝ երիցս անգամ հրամայեալ է սատակել զազգդ ժպիրհ.
և դարձեալ միւսանգամ զքոյին հրաման անդրէն եղծա-
նես: Զիարդ վասն այսորիկ և քաղաքս ամենայն 'ի ժողովս
իւրեանց առաւել վշտացեալ են քան զայն չարագործս:
[23]Զայսմանէ ամենայնիւ վրիպակ արքայն լի եղեալ յիմա-
րութեամբ 'ի վարանս մտանէր. և յայն ինչ ոչ հայէր՝ որ
յերկնից այցելութիւն էր 'ի վերայ հեբրայեցւոց: Դարձեալ
սաստկութեամբ երդնոյր զերդումն անկատար, ասէ. Ա-
ռանց իրիք յերկուանալոյ՝ զնոսա 'ի դժոխս յուղարկեցից
առաԹուր կոխեալս անհնարին գազանացն. զօրաժողով լի-
նել առ հասարակ 'ի վերայ հրէաստանի, զփայտակերտն
հրով դատել, և զկաւակերտն ջուրբ լուանալ. 'ի գերութեան
վարել առ հասարակ, զինչս և զստացուածս, և զոր ինչ կայ
'ի նմա: Եւ զայն պահեստ 'ի մէնջ զտաճարն նոցա հրձիգ
առնել, և զնա տուն զոհից զամենայն աւուրս ժամանակաց
կացուցանել: [24]Յայնմ ժամանակի հաստատութեամբ բանս
լուեալ կոչնականքն, և բարեկամք տոհմային սիրելիք, հաս-
տատութեամբ զբանն լուեալ՝ զուարճացեալ գնային. հրա-
մանն տային զօրացն՝ յամուր վայրի արգելեալս, շուրջ գի-
շերապահս և խրամապահս կացուցանել: [25]Իսկ փղապետն
յանհնարին մոլութիւն զգազանսն վառեալ պատրաստէր.
խնգեալ գինւով կնդրկախառն յահեղ պատրաստութիւնն

---

4 'Ի լուս. Որ անդէն մօտալուտ զոտիւք. Համաձայն ոմանց 'ի բնաբ: 6 Ոմանք. Եւ գիշերոյ վիճակեալ յերկնաւոր... ելանէր պարգև մի մասն քն": Ոսկան. Թանձր և խորխորին և: 7 Ոմանք. Զժամակալ զմահաբեր զօր": 8 Ոմանք. Եւ անդրէն բազմեալ: 9 Ոմանք. Յերկարագոյն նուագքն... կոչեցեալ զփղապետն... և զայս օր կեցեալ գտանին: Ո–ր Ոսկան. և այսօր կե": 10 Ոմանք. Եւ ասէր. Երթ դու... զվաղուի օրն պատրաս": 11 Ոմանք. Իբրև զայս ասէր... ուրախութեամբ իբրև ընդ մի բե"... իւրաքանչիւր 'ի միմեանց բա": 12 Ոմանք. Այն ինչ հաւ խօսէր... ածեալ պատրաստեալ... 'ի մեծ սրահի... իսկ որ 'ի քաղաքին զօրքն էին, առ հասարակ եկեալ հեղեալ: 14 Ոմանք. Յաշխարհ սփռել... փղապետն, աչօք ցուցանէր զպատ":

16 Ոմանք. 'Ի մեծամեծ յաւագանին 'ի վկայութիւն ածէր: 17 Ոմանք. Զի կամէր ցրել զխոր": 18 Ոմանք. Կամ որդիք... գրեսցի կորուսանել գազա"... փոխանակ մեղացդ այդոցիկ... և զհաւատ պահեալ է առ մեզ հերբ": 19 Ոսկան. Մազապուրծ ելանէր: Ոմանք. 'Ի զուարԹութենէ անտի զիջեալ տրտմագին երեսօք այր ընդ արամբ: Ո–ր օրինակ մի. այլ զարամբ զինքն: 21 Ոմանք. Սկսաւ խօսել ընդ նա... այ Թշուառական, պատուիրեալ է վառել կազ"... ազգէն հրէից: 22 Ոմանք. Արդ երիցս անգամ... զազգն դժպիրհ... զքոյին հրամանս անդրէն: 23 Ոմանք. Յայսմանէ ամենայնիւ... լի եղև յիմարութեամբ... զօրաժողով լինել հասանել վաղվաղակի 'ի վերայ հրէաստանի առ հասարակ զփայտակերտն հուրբ դա"... և 'ի գերութեան վա"... և որ ինչ կայ 'ի նմա: Յօրինակին. Զամենայն աւուր ժամանակաց:

վառէր զդիւագին գազանսն առ վաղիւ անդր, անթիւ գէշ
անկեալ Հասեալ յասպարիսի անդ: Արդ՝ ե՛կն եմուտ 'ի
սրահ անդր, ստիպէր տագնապաւ զթագաւորն 'ի կո-
տորումն կապեալ ժողովրդեանն: 26Յայնմ ժամանակի ա-
մենայն զօրքն՝ անՀնարին գազանօքն դիմեալ գայր 'ի
դուրս թագաւորն, 'ի մտի եդեալ անգութ աչօք, անողորմ
սրտիւ, ինքնին տեսանել զվշտագին սատակումն թշուառա-
կան գնդին: 27Իբրև եկին Հասին փղօքն պատրաստելովք,
և զօրօք վառելովք 'ի դուռն քաղաքին. ա՛զդ լինէր Հրէ-
իցն թնդիւն զօրացն, փայլիւն զինուն. փոշին որ ելանէր
դիզանէր՝ յամպս Հասանէր. ամբոխն աղաղակէին գնդքօք
պատեալ, զմիտսն յապուշ դարձուցանէր. և զայս յետին
կատարած Համարեցան 'ի վերայ թշուառութեան կարծ-
եացն: Յողորմ գութ խանդաղատեալ Հարք և մարք, ուս-
տերք և դստերք, քորք և եղբարք, տոՀմային բարեկամք
սիրելիք, զմիմեանց պարանոցօք անկեալ փարեալ պատեալ
Համբուրէին: 28Եւ կէսք զմատաղածին մանկունս 'ի գի՛րկս
առեալ յետին զա՛յն ծուծ ստին 'ի բերան եդեալ տղայոցն՝
Համարէին: Եւ մինչդեռ յայնմ յաղէտս տարակուսի և 'ի
շտապ տագնապի երիթամածեալ կային, յիշեցին զառա-
ջին օգնականութիւնն որ եղև յերկնից. առՀասարակ մի-
աբան 'ի միմեանց մեկնէին, և 'ի տղայ մանկանցն բերա-
նոյ զստինսն 'ի բա՛ց կորզէին. և առ Հասարակ անկեալ
առաջի մեծութեանցն աստուածութեանն թաւալէին: Զա՛յն
բարձեալ մեծաւ բարբառով 'ի գոչիւն լալոյ, զամենազօրն
զամենակալն աղաչէին, 'ի գո՛ւթ դառնալ մեծաւ ողորմու-
թեամբ. փրկել զՀատեալս 'ի յուսոյ, զՀասեալ մերձեցեալսն
'ի դրունս դժոխոց:

6 Եղիազարոս ոմն անուն՝ ա՛յր երևելի 'ի գնդէ քաՀանա-
յիցն, յեցեալ 'ի ծերութիւն, զարդարեալ լուսաւորեալ ա-
մենայն քաջութեամբ և արդարութեամբ 'ի մանկութենէ,
Հազի՛ւ ինչ՝ ծերս քանի մի որ զիւրևն էին՝ Հանդարտե-
ցուցանէր, և առ ի՛նքն յարեալ 'ի սուրբն Աստուած ա-
ղօթս մատուցանէր, և ասէր այսպէս. 2Թագաւո՛ր մեծա-
զօր, բարձրեալ ամենակալ Աստուած. որ զամենայն վարես
և ուղղես 'ի գթութիւն ողորմութեանց քոց. Հայեա՛ց 'ի վե-
րայ ԱբրաՀամեան զաւակիս, 'ի սրբոյ ՍաՀակայ՝ յորդիս
Յակոբայ, 'ի բաժին ժառանգութեան քոյ՝ 'ի ժողովուրդ օ-
տար՝ յօտար երկրի 'ի կորուստ մատնեալ: 3Դու ա՛յն Աստ-
ուած ես, որ զփարաւոն բազմացեալ կառօք և երիվա-
րօք և զօրօքն Եգիպտացւոց, զՀպարտացեալ բարձրացեալ
մեծաբանեալ ամբարտաւան զօրօքն Հանդերձ՝ ծովամացս
'ի կորուստ յուղարկեալս ընկղմեցեր: 4Դու՝ որ զանթիւ
զօրսն պերճացեալ պարծեցեալս՝ Սանատրուկ արքայի Ա-
սորեստանեայց սատակեցեր, որ 'ի մի սայր սուսերի, և
'ի մի տեգ նիզակաց առեալ Հաւաքէր ամփոփել զերկիրն
ամենայն Հրէաստանի. Հպարտացաւ ևս Հասանել ծանր
բարբառով՝ յանդուգն սաստկութեամբ մեծա՛ւ նախատա-
նօք 'ի վերայ քաղաքին սրբոյ: Դու Տէր Հարեր բեկեր
կործանեցեր, յա՛յտ յանդիմանութեամբ ցուցեր զզօրութիւն
բազկի քոյ ամենայն Հեթանոսաց: 5Դու՝ և որ յերկրին Բա-
բելացւոց երեք մանկունքն ինքնակամ զանձինս 'ի Հուրն
մատնեցին՝ զի մի՛ երկի՛ր պագցեն սնոտի պաշտամանց,
փրկեցեր, զի և Հերոյ վարսից նոցա ո՛չ մեղանչէր Հուրն.
Ճարա՛կ ետուր Հրոյն զօրութեանց զթշնամիսն: 6Դու՝ և որ
'ի նախանձ նենգութեան 'ի գո՛ւբ արկեալ զԴանիէլ 'ի բե-
րան անՀնարին գազանացն, 'ի լո՛յս ածեր անարատ պաՀ-
եալ: 7Դու՝ և որ զՀե՛ւրն անդնդոց. որ տեսեր զի մաշէր
'ի պորտ ձկանն, անարա՛տ ածեալ, յանդիման ընտանեաց
իւրոց կացուցանէիր: 8Դո՛ւ Հայր և արդ ամբարտաւա-
նատեաց, բարեսէր, ողորմած, ապաւէն ամենայնի, արա՛գ
երևեա՛ց 'ի վերայ ազգիս Իսրայէլացւոց, որ 'ի ձեռս պղծոց
անօրինաց Հեթանոսաց անկեալ չարաչար կա՛ն 'ի պա-
տուՀասի: 9Ապա եթէ ըստ ամպարշտութեան կեանքս մեր
'ի վախճան մաՀու այսո՛ւ սաստիւք Հասեալ իցեն. 'ի ձե-
ռաց թշնամեացս միայն փրկեա՛ զմեզ. և որով կամիցիս
սաստիկ պատիժ պատուՀասիւք դատեսջի՛ր զմեզ. զի մի՛
ընդունայնամիտ զրախորՀուրդ Հեթանոսք պարծեսցին ա-
ռաջի սնոտեաց իւրեանց 'ի վերայ մերոյ կորստեան, և
ասիցեն թէ՝ Եւ ո՛չ Աստուա՛ծն իւրեանց փրկեաց զնոսա
'ի ձեռա՛ց մերոց: 10Այլ դու որ զամենայն զօրութիւնս՝ և
զիշխանութիւնս և զպետութիւնս յաւիտենից 'ի ձեռս քո
ունիս, անուշակ անմաՀ ողորմա՛ծ Աստուած՝ ողորմեա՛ց
գթա՛ 'ի մեզ, որ ա՛յսչափ անօրէն թշնամանօք զանկարգ
զանիմաստ պատուՀաս մաՀու յանձինս կրեալ 'ի կենաց 'ի
մաՀ՝ զօրէն չարագործաց յուղարկիմք: 11Հաշեսցէ մաշեսցէ
զՀեթանոսս զօրութիւն յաղթութեան քոյ. զի գո՛յ զօրու-
թիւն փրկութեան պատուի քում 'ի վերայ փրկութեան
Յակովբեան տոՀմիս: 12Անկեալ աղաղակէին աւասիկ ամե-
նայն աղածրի երա՛մ երա՛մ բազմութիւն տղայոց. և նոցունց
Հարք և մարք արտասուօք, զի ողորմութիւն քո յայտնի՛
լիցի ամենայն Հեթանոսաց, եթէ դու Տէր մեր ընդ մե՛զ
ես, և ո՛չ դարձուցեր զերեսս քո 'ի մէնջ. այլ որպէս յա-
ռա՛ջ իսկ խոստացար՝ թէ և յերկրի թշնամեաց նոցա զնո-
սա 'ի ձեռաց ո՛չ թողից. արդ զնո՛յն բան Հրամանի քոյ
կատարեսջի՛ր Տէր: 13Այն ինչ լինէր Եղիազարու զաղօթսն
առ Աստուած մատուցանել. և թագաւորն գազանօքն և
զօրօքն Հանդերձ 'ի տեղի Հանդիսին յասպարէս անդր մե-
ծա՛ւ բարկութեամբ Հասանէր: Զաչս 'ի վեր բարձին որդիք
Եբրայեցւոցն, իբրև զայն տեսին՝ 'ի ձա՛յն մեծ գոչման յեր-
կինս զաղաղակ բարձին: Յա՛յն ձայն գոչման առ Հասա-
րակ լերինք և Հովիտք անդրէն կրկնեալ բարբառով ընդ-
դէմ Հնչեցին. անՀնարին խռովութիւն յերկոցունց աղաղա-
կէ գոչմանն 'ի վերայ զօրացն Հասանէր: 14Յայնմ ժամա-
նակի Բարձրեալն փառօք՝ մեծապատիւ ամենակա՛լ Ճշմա-
րիտն Աստուած երևեցո՛յց զերեսս իւր. բաց նա զդրունս
երկնից. ուստի եկին իջին երկու աՀեղ փառաւորեալք ան-
երևոյթ Հրեշտակք. զի ո՛չ ումեք ո՛չ երևէին՝ բայց միայն
Հրէից: 15Եւ Հարան 'ի դիմի թշնամեացն, և լցին զզօրսն
խռովութեամբ, և լի՛ արարին աՀիւ և դողութեամբ. և առ
Հասարակ զամենեսեան անշարժ կապեալ պատեալ պա-
շարեալ պաՀէին: Եւ թագաւորին իսկ գլխովին՝ սոսկացեալ
դողացեալ քստմնեալ լինէին ոսկերք և մարմինքն. սաստն
խռովութեան գազանութեանն՝ և սրտմտութիւն բարկու-
թեանն անդէն յապո՛շ միտս եղծանէին: Եւ գազանքն ան-
դէն յետս 'ի վերայ վառեալ զօրացն յարձակէին, և զբա-
զումս 'ի նոցանէ առաթուր Հարեալ անդէն առ ոտս իւր-
եանց սատակէին: 16'Ի նմին տեղւոջ վաղվաղակի թագա-
ւորին բարկութիւնն 'ի գութ յարտասուս վասն առաջին
պնդութեան յամառութեան խստութեանն Հարկանէր. զի
իբրև լուաւ զգոչիւն բարբառոյն, և զմտաւ ած զկորուստն
բազմաց, զայրացաւ՝ Հարա՛ւ յարտասուս: Խօսել սկսաւ ընդ
բարեկամսն լի՛ բարկութեամբ՝ և ասէ. 17Անցէք զանցէք
ապաքէն, բռնացարուք, թագաւորել կամիք. և զիս իսկ
'ի վերայ ամենայն երախտեաց, 'ի մտաց խորՀրդոց՝ 'ի
տէրութենէ առ Հասարակ մերժե՛լ կամիք. գողացարուք ա-
ւադիկ զմիտս իմ խորՀրդականքդ առաքինիք. և զի՞նչ ո՛չ
է օգուտ տէրութեան մերում, զա՛յն առնել տալ մենքենա-
յիք: 18Ո՞ է որ զՀզօր զաշտարակդ Հաւատարիմ սասանէ,
զաւանդապաՀսդ ուխտից մերոց: Ո՞ է որ զնոսա յիւրա-
քանչի՛ւր տեղեաց բնակութենէ իբրև զգազանս չարագործս
յայս տեղի կապեալս կուտեալս պաշարեալս պաՀէ: Ո՞ է
որ զնոսա որ իսկզբանէ ընդ մեզ միաբանութեամբ և ար-

25 Ոմանք. Յանհնարին մոլորութիւն զգա՛... զաՀեղ պատրաս-
տութիւն... անթիւ զօրաց գէշ անկեալ... 'ի կատարումն կապ-
եալ ժողովրդեանն: 26 Ոմանք. Ամենայն զօրօքն անՀնա՛... գայր
'ի ներքս թագաւորն... թշուառական ազգին: 27 Ոմանք. Ամբոխ
աղաղակին գնդքօք պա՛... և զայն յետին կատա՛: 28 Ոմանք. Առ-
եալ զյետին զանծուծ ստին... և շտապ տագնապի էր՝ 'ի թաւ
մածեալ կային... մանկանց բերանոցն... զՀասեալս մերձեալսն 'ի
դրունս: 6.1 Ոմանք. 'Ի մանկութենէ իւրմէ. Հազիւ ինչ զծերսն և
զամենեսին որ զիւրևն... մատուցանէր. և յառաջ մատուցեալ ա-
սէր այսպէս: Որ օրինակ մի. Զծերսն քան զամենեսին 'ի մի
որ զիւրևն: 2 Ոմանք. 'Ի յորդիս Յակոբայ, 'ի բաժին սրբութեան
քո... յօտար երկիր 'ի կորուստ մատնել: 3 Ոմանք. Ամբարտաւան-
եալ զօրօքն Հանդերձ ծովաթացս 'ի կո՛: 4 Ոմանք. Սանատրկով
արքային Ասորես՛... աւագեալ ամփոփեալ զերկիրն... 'ի վերայ
քաղաքին սրբութեանց: 'Ի լուս. 'ի վերայ՝ Սանատրուկ, նշանա-
կի՝ Սենեքերիմ: Որ օրինակ մի. Սանատրուկ Սենեքերիմ արքա-
յի: Ոմանք յաւելուն. Դու Տէր ամենակալ Հարեր: 5 Ոմանք. Մնոտւոյ
պաշտամանց... ո՛չ մեղանչեաց Հուրն:

6 Ոմանք. ԶԴանիէլ 'ի բերանոյ անՀնարին գա՛: 7 Բազումք.
Դու և Հեւրն անդնդոց: 8 Յօրինակին. Արագ երևելեաց 'ի վե-
րայ ազգիս: 9 Ոմանք. Այս սաստիւ... 'ի ձեռաց միայն 'ի թշնամ-
եաց... և ասասցեն եթէ ո՛չ Աստուածն իւր՛: 10 Ոմանք. Յանձինս
կալեալ 'ի կե՛: 11 Ոմանք. 'Ի պատուի քում 'ի վերայ... տոՀ-
մին: 12 Այլք. Անկեալ աղաչէն աւասիկ: 13 Յօրինակին պակասէր.
Եւ Հովիտք անդրէն կրկնեալ: 14 Ոմանք. Զի ո՛չ ումեք երևէին: 15
Ոմանք. Սաստն խստութեան գազանութեանն... և գազանքն անդ-
րէն յետս: 16 Յօրինակին պակասէր. Վաղվաղակի Թագաւորին՝
բարկութիւնն: 17 Ոմանք. 'Ի մտաց 'ի խորՀրդոց:

դարութեամբ քան զամենայն ազգս և ազինս 'ի մէջ բա-
զում պատերազմաց և խռովութեան ժամանակի, Հաւա-
նութիւն արդարութեան պահեալ, այսպիսի անօրէն չա-
րաչար տանջանօք ածեալ կապեալ պատեալ պաշարեալ
պահէ: [19]Լուծէք արձակեցէք զանօրէն կապանսդ, յիւրա-
քանչիւր տեղիս խաղաղութեամբ յուղարկեցէք, զառաջին
զեղեալ ըկութիւնսն 'ի գրգութիւնս ողոքանաց. միխիթա-
րեցէք զորդիսդ ամենակալի Աստուծոյ երկնաւորի կեն-
դանւոյ, որ 'ի սկզբանն նախնեաց մինչև ցայսօր ան-
արգել տէրութիւն և Հաստատուն իրաւունք` տուեալ են
մեզ: Եւ թագաւորն յայսմ օրինակի զբանս իւր մերկա-
նայր: [20]Իսկ Հեբրայեցիքն վաղվաղակի յական թօթափել,
լուծեալք 'ի կապանաց անտի, զամենակալ փրկիչ զսուրբն
Աստուած իւրեանց օրՀնէին. այն ինչ մազապուր 'ի դրաց
մաՀուանէ չՀաւատալի զերծեալք: [21]Իբրև զայն դիւրութիւն
դիւրէր Հեբրայեցւոց` թագաւորն ինքն 'ի ներքս 'ի քա-
ղաքն դառնայր, կոչէ՛ր Հրամայէր զմտից դպիրն` և ասէ.
Հա՛պա, վաղվաղակի գինի՛ և նաշիՀ, և որ զինչ պիտի
յուրախութեան Հանդերձ Հրէիցն մատուցանել զեւթն օր:
Զի Հրամայեցաւ նոցա 'ի նմին տեղւոջ ուր Համարեցան
զեղեռնաւոր սատակումն անձանց իւրեանց կատարել, ան-
դէն զայն եւթն օր փրկութեան ուրախութեամբ անցուցա-
նէին: [22]Յայնմ ժամանակի` որ յառա՛ջ մատնցո՛յց նախա-
տանօք եկեալ Հասեալ 'ի մաՀ, մանաւանդ թէ մտեալ իսկ
էին ընդ դրունս դժոխոց. փոխանակ դառն այնր օրա-
Հասին` խնճոյս ուրախութեան կացուցեալ 'ի փրկութեան
տեղւոջն, ուր սատակմանն և վՀին ակն ունէին: Բազմա-
կանս բազմականս բաշխեալ լի՛ ուրախութեամբ յիւրաքան-
չիւր կողմանս բաժանէին: [23]Եւ փոխանակ արտասուալից
ողբոցն, երգս առեալ 'ի ձայն օրՀնութեան Հայրենի բար-
բառովն զնշանագործ փրկիչն զԱստուած օրՀնէին: Զլալ-
իւն և զՀեծեծութիւն 'ի բա՛ց մերժեցին. պա՛ր առեալ ու-
րախութեան խաղաղութեան ցնծութեան նշան կանգնէին:
[24]Սո՛յն օրինակ և թագաւորն վասն նոցա 'ի մեծի՛ տաճա-
րին ժա՛մ տուեալ ուրախութեամբ բազմաւ զկոչնականսն
Հրամայէր 'ի ներքս կոչել, անպակաս բերանով յերկինս
Հայեցեալ, բազմապատիկ 'ի վերայ յանկարծակի աքանչելի
փրկութեան ժողովրդեանն զԱստուած 'ի վե՛ր օրՀնէին: Եւ
որ յառաջն 'ի սատակումն գազանաբէշ Հաւակերի զժողո-
վուրդն նուիրէին խնդութեամբ, յոգւո՛ց ելանէին ամօթ և
վնաս յանձին կալեալ. և զՀրաշալի՛նչ բարկութիւնն իւրեանց
շիջուցեալ, ցնծութեամբ զուրախութիւն զուարթացուցանէ-
ին: [25]Իսկ Հրէայքն որպէս ասացաք յառաջագոյն` պա՛րս
ուրախութեան կազմեալ զեւթնօրեայ ժամանակն զուար-
թութեամբ ցնծութեամբ օրՀնէին զԱստուած: 'Ի Հաւասար
միաբանութենէ [26]օրէնս դնէին յամենայն տեղիս բնակու-
թեան իւրեանց` ածե՛լ զաւուրսն զայն ուրախութեան. ո՛չ
վասն Հպարտութեան, և ո՛չ վասն որկորստութեան, այլ
վասն գոՀութեան և փրկութեան զոր արա՛ր ընդ նոսա
Աստուած: [27]Կարգեցին խառնել զաւուրսն զայնս 'ի տօնս
տարեկանաց իւրեանց. և ապա խնդրեցին 'ի թագաւորէ՛
անտի արձակել զինքեանս յիւրաքանչիւր տեղիս: Յաշ-
խարՀաՀամար խառնէին 'ի Հինգերորդ քսաներորդ Պա-
քոնայ, մինչև 'ի չորրորդն Եպիփայ` աւուրս քառասուն:
[28]Դարձեալ Հրաման ևս արարին 'ի տեղւոջն առնել զե՛լս և
զծախս 'ի Հինգերորդէ անտի Եպիփայ մինչև յօր երրորդ
ամսոյ աւուրցն, յորում մեծապէս փառաւորեցո՛յց Աստուած
զողորմութիւն իւր, և փրկեաց զնոսա անարատս առ Հա-
սարակ. և ա՛յնպէս ուրախ լինէին 'ի Հրամանէ թագաւո-
րին: [29]Զի Հրամայեալ էր տալ զամենայն Հանդերձանս զու-
րախութեան, մինչև յօրն չորեքտասաներորդ, յորում գտին
զվճիռ արձակելոյն իւրեանց: Յանձն առ թագաւորն. Հրա-
մա՛ն ետ տալ Հրովարտակս 'ի քաղաքս քաղաքս` առ զօ-
րավար զօրավար օրինակ զա՛յս:

7 Արքայ Փիղովպատովր Պտողոմէոս` առ զօրավարս և Դ
առ ամենայն իշխանս` և պետս, որ 'ի վերայ իրաց ար-
քունի են` ողջոյն. դուք խրա՛խ լիջի՛ք, զի ո՛ղջ եմք մեք
որդւովք և եղբարբք, և ամենայն զօրօք Հանդերձ, որպէս
և աջողեաց Աստուած զիրս մեր, որպէս մեր իսկ միտք
խնդրէին: [2]Արդ ոմանք 'ի ներքին բարեկամաց աստի մե-
րոց` ըստ իւրեանց չարաբարութեան կանխեալ մերձենային
չարախօս լինել. գրգռէին զմիտս մեր, մինչև ածին 'ի Հա-
ւանութիւն` տալ Հրաման ժողովել զամենայն Հրեայ ազգ`
որ ընդ մերո՛վ իշխանութեամբ, խռնել 'ի մի՛ վայր` կոտո-
րել 'ի նորանշան տեսիլ տանջանաց: [3]Եւ ամենևին թոյլ ո՛չ
ետուն` պատճառս եդեալ զոխութիւն որ ունէին ընդ ամե-
նայն Հեթանոսս, մինչև ածին ժողովեցին. զորս և կապեալս
ևս ածին, բազում ըկութեամբ և չարչարանօք իբրև զա-
նաշխարՀիկս, մանաւանդ թէ իբրև զչարագործս. առանց
ամենայն Հարցափորձի քննութեան. յօժարեցին կոտորել
զնոսա միանգամայն: Քան զխուժ և զդուժս վայրենագոյն
ևս զգածեալ էր զիւրեամբք զգազանութիւնն: [4]Այլ մեք որ-
պէս սովո՛ր եմք` զնոսա խստագոյնս պատուՀասեցաք. այլ
որպէս և մարդասիրութիւն ունիմք ընդ մարդիկ, Հազիւ
մինչ նոցա զոգիսն շնորՀեցաք, և մեք զԱստուած երկնա-
ւոր ծանեաք, զի ճշմարտութեամբ այցելո՛ւ եղև Հրէիցն,
որպէս Հայր որդւոց լինիցի: [5]Եւ դարձեալ զսոցա սէր և
զմիամտութիւն, որպէս զի Հաստատուն ունէին ընդ մեզ 'ի
նախնեացն մինչև 'ի նախնիս. խորՀեցաք Հրաման տուաք
արձակել զդոսա. և թողաք դոցա զամենայն վնաս զոր ե-
դին 'ի վերայ: Եւ զայն ևս Հրաման տուաք, զի զամենեցուն
զդոցա` զոյր ինչ ուրուք և առեալ իցէ` յիւրաքանչիւր տէր
դարձուցանել, զի ոք 'ի նոցանէ ամենևին մի՛ զրկեսցի. և
մի՛ ոք իշխեսցէ նախատել զնոսա վասն իրացդ եղելոց:
[6]Զի զայս գիտասջիք. եթէ ինչ զդոսա խորամանգել կամ
տրտմեցուցանել յօժարեսցուք, ո՛չ առ մարդ մեղանչեմք, այլ
առ այն` որ ամենայն զօրութեանց և բարձրութեանց տիրէ
Աստուած. և ո՛չ եթէ 'ի մարդոյ միայն Հատուցումն գտանէ
այնպիսին, այլ անվրէպ ամենայն իրօք 'ի Բարձրելոյն
գտանէ: Եւ դուք ո՛ղջ լիջի՛ք: [7]Իբրև առին զՀրովարտակն
զայն` ո՛չ եթէ փութացուցանել վաղվաղակի, այլ մտեալ առ
թագաւորն անդր` աղօթս մատուցանել` և ասել. Յագգէ
աստի Հրէից` որ զսուրբն Աստուած խնքնակամն ուրացան.
և անցին ըստ օրէնսն Աստուծոյ, Հրամայել տա՛լ 'ի ձեռս
նոցա, ըստ արժանի օրինացն ածել զպատուՀաս 'ի վերայ
նոցա: Դնէին ևս 'ի վերայ և ասէին. Եթէ մարդք` որ վասն
պորտոցն աղետի և որկորոյն չարութեան յօժարեցին ան-
ցին ըստ օրէնս նախնեացն, երբէք նոքա յիրս արքունի ար-
դարանալ միամտութեամբ ո՛չ կարեն: [8]Իրաւա՛նս Համարե-
ցաւ թագաւորն, և ետ նոցա իշխանութիւն` զի սատակես-
ցեն զյանցաւորս օրինացն Աստուծոյ, ընդ ամենայն տեղիս
տէրութեան թագաւորին ուր և գտցեն` ամենայն Համար-
ձակութեամբ. և ոք ընդդէմ մի՛ դարձցի` մի՛ իւիք սաստիւք
արքունի: [9]Յա՛յնմ ժամանակի գոՀացան օրՀնեցին` որ-
պէս օրէնք էին քաՀանայիցն, և ամենայն ժողովուրդքն.
և գլուխ բանից բարբառոյն և վախճան` եդին զալէլուիա:
Ուքեանք ցնծութեամբ և ուրախութեամբ պագին երկիր,
և 'ի թագաւորէ անտի գնացին: [10]Իբրև անկան յուղի.

18 Ոմանք. Ո՛վ է որ... իբրև զգազանս ինչ չարա՞... ո՞վ է որ զնոսա խսկզբանէ... 'ի ժամանակի Հաւանութեան զարդարութիւն պարՀեալ... պատեալ պարշարեալ պաՀէ: 19 Ոմանք. Որ 'ի սկզբա-նէ նախնեաց մինչև... յայն օրինակ զբանս: 20 Ոմանք. Մազա-պուրք 'ի դրանց մաՀուանէ չաւատալի զերծեալ լինէին: 21 Ո-մանք. Եւ որ զինչ պիտոյ իցէ. կամ պիտիցի յուրախութիւն Հրէ-իցն... եւթն օր փրկութեամբ անցուցանել: 22 Ոմանք. Նախա-տանօք մերձեցեալ. մանաւանդ... փոխանակ դառնածաղր օրՀա-սին: 23 Ոմանք. Եւ փոխանակ արտօսրալից... և զՀեծութիւն 'ի բաց մեր՞... նշանակ կանգնեցին: 24 Ոմանք. Վասն նոցա մե-ծի տաճարին... 'ի վերայ սքանչելի փրկութեան... և որ յառա-ջին սատակումն գազանա՞: 25 Ոսկան. 'Ի Հաւասար միաբանու-թեան: 26 Ոմանք. Օրէնս դնէին ընդ ամենայն տեղիս: 27 Ոմանք. ՅաշխարՀաՀամար խառնէին զնոսա. և Հինգերորդ քսա՞... մինչ 'ի չորրորդն Իպիփայ: 28 Ոմանք. Զի փրկեաց զնոսա անա՞:

29 Ոմանք. Զի Հրամայեալ տալ զամենայն զՀանդերձս ուրա՞: 7.1 Ոմանք յա–ել–ն. Պտողոմէոս` 'ի կողմանս. կամ 'ի կողմանց Եգիպտացւոց առ զօրավարս... որ 'ի վերայ ամենայն իրաց արքունի... զի և մեք ողջ եմք որ՞... որպէս զի ուղղեաց Աստուած զիրս մերս: 2 Ոսկան. Իւրեանց չարաբարոյութեան: Ոմանք. Ընդ մերով իշխանութեամբ իցեն, խառնել 'ի մի վայր, կատարել 'ի նորատեսիլ տանջանաց: 3 Ոմանք. Որ ունիին ընդ ամենայն Հե՞... քան զխուժս և զդուժս: 4 Ոմանք. Զնոսա խստագոյնս պա՞... ունիմք ընդ ամենայն մարդիկ... զորդիսն շնորՀեաք: 5 Ոմանք. Եւ դարձեալ նորա զսէր և զմիամտութիւն, որպէս զի Հաստատուն ունելով մեզ 'ի նախնեաց մերոց մինչև թողաք դոցա զամենայն... և զայս ևս Հրաման տուաք, զի ամենեցուն դոցա զոր ինչ և ուրուք առեալ իցէ: 7 Ոմանք. Ոչ եթէ փութացան ելանել վաղվաղակի, այլ մատեան առ թագաւորն... ըստ արժանի գործոյն ածել զպատու՞... որ վասն պորտոյն և որկորոյն չարութեան յօժարեցին անցանել ըստ օրէնս նախնեացն. երբէք նորա յիրս ար՞: 9 Ոմանք. Որպէս օրէն էր քաՀանայիցն... և գլուխ բանից բարբառոյն եդին զալէլուիա:

